Կեցցե՛ Մայիսի 1-ը՝ իմպերիալիզմի դեմ, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում աշխատավորների միջազգային համերաշխության օրը:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5 ՄԱՅԻՍ
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՀՈԴՎԱԾՆԵՐ

## СОДЕРЖАНИЕ



### СТАТЬИ





# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ՀամԼԿԵՄ XVIII համագումարում, 1978 թ. ապրիլի 25-ին

*Ընկե՛ր պատգամավորնե՛ր: Համագումարի հարգելի հյուրե՛ր:*

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի անունից, մեր լենինյան կուսակցության բոլոր անդամների անունից ջերմորեն ողջունում եմ մեր ամենաբարձր կոմերիտական ժողովի մասնակիցներին և հանձինս ձեր՝ բոլոր կոմերիտականներին, սովետական ամբողջ երիտասարդությանը:* (**Ծափահարություններ**):

*58 տարի առաջ, հանդես գալով այն ժամանակ դեռ բոլորովին երիտասարդ կոմերիտմիության երրորդ համագումարում, Վլադիմիր Իլյիչ Լենինը որպես գլխավոր հարց առանձնացրեց այն հարցը, «...թե մենք ինչ պետք է սովորեցնենք երիտասարդությանը, և նա ինչպես պետք է սովորի, եթե նա իրոք կամենում է արդարացնել կոմունիստական երիտասարդության կոչումը, և ինչպես պետք է նախապատրաստենք նրան, որպեսզի նա կարողանա կառուցել և ավարտել այն, ինչ որ սկսել ենք մենք»* (**Երկեր**, *հ. 31, էջ 344):*

*Լենինյան այս հարցադրումը այսօր էլ պահպանել է իր ամբողջ հրատապությունը: Մենք ինչ պետք է սովորեցնենք երիտասարդությանը, և ինչպես պետք է նա սովորի (իհարկե, ոչ միայն դպրոցական, այլև ավելի լայն իմաստով՝ կյանքի գիտության իմաստով), որպեսզի դառնա կոմունիզմի արժանի կառուցողը,— այս հարցը հիմա էլ գլխավորն է կոմերիտմիության աշխատանքում և այդ աշխատանքի կուսակցական ղեկավարման ասպարեզում:*

*Ընդհանուր առմամբ, ավագ սերնդի կոմունիստները, ըստ իս, կարող են գոհ լինել մեր օրերի սովետական երիտասարդությունից: Նա աճում է որպես կոմունիստականորեն համոզված, կուսակցության գործին, մեծ Լենինի գործին խորապես նվիրված երիտասարդություն:* (**Ծափահարություններ**): *Միլիոնավոր պատանիներ ու աղջիկներ ցույց են տալիս խիզախության, տոկունության, Հոկտեմբերի իդեալներին հավատարմության օրինակներ: Նրանք մեծ խանդավառությամբ են աշխատում ամենուրեք, ուր առկա է կոմունիստական շինարարության ճակատը, ակտիվորեն պայքարում են երկրի զարգացման լարված պլանների կատարման համար: Նրանք ամեն մի գործի մեջ մտցնում են իրենց հատուկ ռոմանտիկական ավյունը և, ես կասեի, երիտասարդական խոյանքը: Այդ ամենի համար շնորհակալություն կոմերիտմիությանը, շնորհակալություն սովետական երկրի բոլոր երիտասարդներին:* (**Երկարատև ծափահարություններ**):

*Թող այսուհետև ևս ձեր սրտերում վառվի հայրենասիրության ջինջ կրակը, ապրի հանձնարարված գործի համար, երկրում տեղի ունեցող ամեն ինչի համար անձնական պատասխանատվության վեհ զգացումը:* (**Ծափահարություններ**):

*Կուսակցության XXV համագումարը հաստատեց հնգամյակի և հետագա հեռանկարի ծավալուն ծրագիրը: Այն ենթարկված է մի նպատակի՝ որպեսզի սովետական ժողովուրդը ավելի լավ, ավելի լիարյուն, ավելի երջանիկ ապրի, որպեսզի մենք է՛լ ավելի վստահորեն առաջ շարժվենք դեպի մեր պայծառ նպատակը՝ կոմունիզմը: Կուսակցության նախատեսածից շատ բան հաջողությամբ իրականանում է հնգամյակի ընթացքում, բայց շատ բան էլ դեռ պետք է անել, այդ թվում, իհարկե, պետք է անեք դուք՝ երիտասարդներդ:*

# I.

Մեր հայրենիքի այսօրվա կարևորագույն բնորոշ հատկանիշներից մեկը պայքարն է արդյունավետության և որակի համար։ Դա ժամանակավոր կամպանիա չէ։ Դա կուսակցության կուրսն է, որը, ինչպես ասվում է, վերցված է լրջորեն և երկար ժամանակի համար։ Դա ոչ միայն ընթացիկ հնգամյակի հիմնական խնդիրն է, այլև մեր տնտեսական ու սոցիալական զարգացման որոշիչ գործոնը՝ երկար տարիների ընդգրկումով։ Դա, եթե ուզում եք, նաև սովետական մարդկանց մի ամբողջ սերնդի դաստիարակության ծրագիրն է։

Մեր երկիրը վիթխարի բնական հարստություններ ունի։ Մի քանի սերունդների ջանքերով մեզանում ստեղծված է տնտեսական զորեղ պոտենցիալ ինչպես արդյունաբերության մեջ, այնպես էլ գյուղատնտեսության մեջ։ Մենք աճեցրել ու պատրաստել ենք մեծաթիվ կրթված, որակյալ կադրեր, մարդկանց համար ապահովել ոչ վատ կենսապայմաններ։

Այժմ, ինչպես երբեք, կարևոր է հմտորեն, խելացիորեն, տնտեսաբար օգտագործել այդ բոլոր բազմահարուստ ռեսուրսները, դրանք ինչպես հարկն է ի սպաս դնել ժողովրդին, դրանցից առավելագույն օգուտ քաղել։

Իհարկե, արդյունավետությունն ու որակը շատ լայն հասկացություններ են։ Դրանք իրենց մեջ ընդգրկում են նաև այնպիսի հիմնարար տարրեր, ինչպիսիք են արտադրողական ուժերի առավել ռացիոնալ տեղաբաշխումը, համապետական պլանավորման կատարելագործումը, կոմպլեքսային մոտեցումը տնտեսական խոշոր պրոբլեմների լուծմանը։ Այդ տեսակետից կուսակցությունը, այդ թվում նաև Կենտկոմի անցյալ տարվա դեկտեմբերյան պլենումում, հստակ խնդիրներ դրեց մեր պետական մարմինների առջև, ներառյալ պետպլանը և համապատասխան մինիստրությունները։ Բայց շատ ու շատ բան կախված է յուրաքանչյուր ձեռնարկությունից, յուրաքանչյուր արտադրամասից և յուրաքանչյուր բրիգադից, յուրաքանչյուր աշխատավորից։

Ի՞նչ է նշանակում դա։

Դա նշանակում է՝ աշխատել ոչ թե պարզապես կարգապահ ու ջանասիրաբար, այլ աշխատել խղճի մտոք, հմտորեն, արդյունավետ կերպով, աշխատել գեղեցիկ կերպով, որպեսզի ուրիշներն էլ քեզ հարգեն քո աշխատանքի համար, և ինքդ էլ քեզ հարգես։

Դա նշանակում է՝ ռացիոնալ կերպով կազմակերպել աշխատանքը յուրաքանչյուր տեղամասում, ապահովել արտադրանքի հաստատուն, լավ որակի և նրա հետագա բարելավման համար խրախուսելու հուսալի սիստեմ։

Դա նշանակում է՝ ժողովրդին պատկանող նյութական արժեքների նկատմամբ հոգատար վերաբերմունքը դարձնել սովետական մարդկանց կյանքի և աշխատանքի առաջին օրենքը. հաստատակամորեն գտնել նորանոր եղանակներ՝ վերացնելու անարտադրողական ծախսումները։

Դա նշանակում է՝ աշխատանքային կոլեկտիվներում ստեղծել բարոյահոգեբանական այնպիսի մթնոլորտ, որի ժամանակ յուրաքանչյուրը իր բնական պարտքը կհամարի և հնարավորություն կունենա աշխատելու առավելագույն արդյունավետությամբ, առավելագույն հատույցով, այնպիսի մթնոլորտ, որի ժամանակ լոդրերի, գործալիքների, խոտանարարների, հանրային ունեցվածքը հափշտակողների դրությունը իրոք անհանդուրժելի կդառնա։

Սրանք են խնդիրները, ընկերնե՛ր։ Կուսակցությունը դրանք առաջադրել է ամենայն հստակությամբ ու հաստատակամությամբ։ Միլիոնավոր աշխատավորներ հավանություն տվեցին կուսակցության կոչին և նրան արձագանքեցին իրենց գործերով։

Մամուլի հաղորդումներից դուք, ըստ երևույթին, գիտեք, թե այդ ուղղությամբ ինչպիսի լայն, պլանաչափ և մանրակրկիտ աշխատանք է կատարվում Մոսկվայի և Լենինգրադի, Մինսկի և Լվովի, Ուրալի և Կուզբասի, Տաշքենդի և Կարագանդայի ձեռնարկություններում, երկրի աշխատավորական շատ կոլեկտիվներում։

Այդ աշխատանքին ակտիվորեն մասնակցում է երիտասարդությունը։ Դուք լսունդ եք առաջադրել՝ «Արդյունավետության և որակի հնգամյակին՝ երիտասարդների խանդավառությունն ու ստեղծագործությունը»։ Դա լավ, ճիշտ լոզունգ է։ Կոմերիտմիության պատվի գործն է հասնել այն բանին, որ այդ լոզունգը օրավուր մարմնավորվի կյանքում բոլոր երիտասարդ բանվորների, կոլտնտեսականների, տեխնիկների, ինժեներների կողմից։

Առաջավոր ձեռնարկություններում, օրինակ, Վոլգյան ավտոմոբիլի գործարանում, կուտակվել է արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման հարցերի կոմպլեքսային լուծման օգտակար փորձ։ Մենք իրավունք ունենք ակնկալելու, որ դա ամենալայն տարածումը կստանա։ Դրան աջակցելու է կոչված նաև կոմերիտմիությունը։ (Ծափահարություններ):

Կամ վերցրեք Շչեկինոյի մեթոդը։ Դա հնարավորություն է տալիս զգալիորեն ավելացնելու արտադրության ծավալը՝ նվազեցնելով աշխատողների թիվը։ Թվում է, թե խնդիրը պարզ է։ Սակայն այդ մեթոդը դեռ պատշաճ տարածում չի ստացել։ Որոշ տնտեսական ղեկավարներ, գերատեսչությունների աշխատողներ, ըստ երևույթին, ոչ մի կերպ չեն կարողանում հրաժարվել ամրացած կանոններից, վերանայել և փոխել արտադրության կառավարման առանձին սկզբունքներ և նրա կազմակերպման ձևեր։

Ժամանակն է, որ մենք, ընկերներ, սովորենք գործնականորեն ներդնել առաջավոր փորձը, մինչև վերջ հասցնել ամեն մի օգտակար գործ։ (Ծափահարություններ):

Իսկ որո՞նք են այսօր արդյունավետության և որակի համար մղվող պայքարի վճռական տեղամասերը մեր ժողովրդական տնտեսության մեջ։ Դրանք մի քանիսն են, բայց ես առաջին հերթին կհիշատակեի կապիտալ շինարարությունը և տրանսպորտը։ Այդ բնագավառներում գործերի բարելավումից մեծապես կախված են ամբողջ տնտեսական ճակատի մեր հաջողությունները։ Այս հարցերը սևեռուն ուշադրության առարկա եղան Կենտկոմի անցյալ տարվա դեկտեմբերյան պլենումում, դրանց մասին, ինչպես գիտեք, ես առիթ ունեցա նորից խոսելու վերջերս երկրի արևելյան շրջաններ կատարած իմ ուղևորության ժամանակ։

Մենք, ինչպես ես արդեն ընդգծել եմ, խիստ պատասխան կպահանջենք տնտեսական ղեկավարներից դանդաղաշարժության համար, ուժերն ու միջոցները ճշտորեն կենտրոնացնել չկարողանալու, անավարտ կառույցներում ժողովրդական միջոցները սառեցնելու համար։ Բայց չէ՞ որ բանը միայն ղեկավարները չեն։ Դա կախված է նաև նրանից, թե ինչպես կաշխատեն, ինչպիսի պատասխանատվություն կցուցաբերեն շինարարության մեջ և տրանսպորտում զբաղված միլիոնավոր մարդիկ, և նրանց մեջ՝ միլիոնավոր պատանիներ ու աղջիկներ, այդ թվում՝ կոմերիտականներ։ Այստեղ հատկապես կարևոր են ստեղծագործական նախաձեռնությունը, հարվածային աշխատանքը բոլոր տեղամասերում, մրցությունը, որի գերագույն նպատակն է ապահովել ժողովրդատնտեսական վերջնական արդյունքը երկրի համար։

Օգտակար կլիներ, օրինակ, լայնորեն արձագանքել «բանվորական էստաֆետի» սկզբունքով հարակից արտադրությունների աշխատողների մրցությանը՝ կառույցների, նախագծողների, արդյունաբերության, տրանսպորտի և գյուղատնտեսության ձեռնարկությունների կոլեկտիվների մրցությանը՝ հնգամյա պլանով նախատեսված կարևորագույն կարողություններն ու օբյեկտները ժամանակին և ժամկետից շուտ գործարկելու համար։

Ինչ վերաբերում է տրանսպորտին, ապա այստեղ կարելի է նշել լենինգրադցիների արժեքավոր նախաձեռնությունը՝ Լենինգրադի տրանսպորտային հանգույցում ծովայինների, երկաթուղայինների, ավտոմոբիլիստների և գետայինների կոլեկտիվների աշխատանքային համագործակցության փորձը։ (Ծափահարություններ):

Այս և նմանօրինակ այլ նախաձեռնություններ կարիք ունեն ձեր պաշտպանությանը, թանկագին բարեկամներ, ձեր եռանդին, ձեր երիտասարդական խանդավառությանը։ (Ծափահարություններ):

Կոմերիտմիությունը միշտ եղել է սովետական մեծ կառույցների հուսալի







*շեֆը։ Այդ հիանալի ավանդույթը պահպանվել է։ Բայց մեր կառույցներն իրենք էլ շատ բանով փոխվել են։ Այսօր արդեն դրանք ոչ թե առանձին հսկա կառույցներ են, այլ ամբողջ վիթխարի աշխարհագրական շրջաններ։*

*Այստեղ կանգ կառնեմ, միայն այդպիսի շրջաններից մեկի վրա։ Հայրենիքի ապագայի համար դրա նշանակությունը օրեցօր աճում է։ Խոսքը վերաբերում է Արևմտյան Սիբիրին, ավելի ճիշտ՝ Տյումենին։*

*Ընդամենը տասը տարի առաջ մենք այդ տայգային երկրամասը դարձրինք երկրի գլխավոր նավթային բազան։ Այժմ այնտեղ գազի և քիմիական հզոր ինդուստրիա է ծավալվել։ Այժմ Տյումենի մարզի բնանկարի համար բնորոշ են ոչ թե անտառային և եղջերվական արահետները, այլ նորաստեղծ քաղաքները, նավթահանքերն ու գազահանքերը, գործարանները, երկաթուղիները, ավտոմոբիլային մայրուղիները։ Հապա մասշտաբները։ Խորհեցե՛ք, հապա, ընկերներ, Օբի շրջանում տնտեսապես յուրացվում և բնակեցվում է մեկ միլիոն քառակուսի կիլոմետր տերիտորիա։ Դա մոտավորապես Իսպանիայի, Իտալիայի և Անգլիայի տարածությունն է՝ միասին վերցրած։* **(Ծափահարություններ)**։

*Այո՛, մենք համարձակորեն այդտեղ ներդրել ենք հսկայական միջոցներ։ Եվ չենք սխալվել։ Ծախսերն արդարացրին իրենց։ Այսօր Տյումենը տալիս է սովետական նավթի գրեթե կեսը և մեծ քանակությամբ գազ։ Օրերս կուսակցության Կենտկոմը ողջունեց Արևմտյան Սիբիրի նավթագործներին. նրանք հայրենիքին տվեցին մեկ միլիարդ տոննա նավթ։* **(Ծափահարություններ)**։ *Դա աշխատանքային մեծ հաղթանակ է։ Փառք ու պատիվ հյուսիսում սև ոսկի արդյունահանող մեր մարդկանց։* **(Երկարատև ծափահարություններ)**։

*Տյումենյան պաշարներով մենք դեռ երկար տարիներ պետք է ապրենք։ Իսկ մոտակա տասը տարում մենք հուսով ենք նավթի, գազի և նրանցից արտադրվող արժեքավոր քիմիական հումքի հիմնական աճն ստանալու հենց Տյումենի հաշվին։ Այդ կապակցությամբ սկսվում է, իսկ ավելի ճիշտ, արդեն սկսվել է Արևմտյան Սիբիրի զարգացման նոր, ավելի բարդ փուլը։ Անհրաժեշտ է այնտեղ կրկնապատիկ, եռապատիկ մեծացնել բոլոր աշխատանքների ծավալները։ Դա կպահանջի թե՛ նյութատեխնիկական նոր ծախսումներ, թե՛ մարդկային աշխատանքի հոսք։*

*Ինչո՞վ կարող է Արևմտյան Սիբիրին օգնել կոմերիտմիությունը։ Ես գիտեմ, այնտեղ այժմ արդեն կա տասներեք կոմերիտական հարվածային կառույց։ Այնուամենայնիվ, ես կխնդրեի ձեզ ուժեղացնել ուշադրությունը այդ շրջանի նկատմամբ։*

*Կառույցներին հարկավոր են ոչ թե պարզապես աշխատող ձեռքեր։ Հարկավոր է այնտեղ ուղարկել որոշակի թվով շինարարներ, մոնտաժողներ, վարորդներ, հորատողներ, ուսուցիչներ, այլ մասնագիտությունների մարդիկ՝ ահա թե ինչ է հարկավոր։*

*Արևմտյան Սիբիրի վրա «հարձակվելու» հենց սկզբում առաջ քաշվեց լոզունգ՝ նրա հարստությունները նվաճել ոչ թե թվով, այլ հմտությամբ, այսինքն՝ նորագույն տեխնիկայի և տեխնոլոգիայի օգնությամբ։ Այստեղ ևս քիչ հաջողություններ չեն ձեռք բերվել։*

*Վերցնենք շինարարության բլոկային մեթոդը։ Ի դեպ, այն մշակել և արմատավորել են երիտասարդ էնտուզիաստները՝ «Տյումենգազմոնտաժ» տրեստի բանվորներն ու ինժեներները։ Նրա էությունն այն է, որ նավթահանքային շատ օբյեկտներ ամբողջովին պատրաստվում են թիկունքային բազաներում, գործարանային արտադրամասերում, իսկ ապա բլոկներով փոխադրվում են ուզած հեռավորության վրա գտնվող վայրը և այնտեղ մոնտաժվում։*

*Հաշվարկված է. այդպիսի մեթոդը թույլ է տալիս սիբիրյան հանքավայրերի շինարարության ընթացքում քառապատիկ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Իսկ դա նշանակում է տնտեսել հազարավոր և նույնիսկ տասնյակ հազարավոր աշխատող ձեռքեր։*

*Ինչպես տեսնում եք, Արևմտյան Սիբիրի յուրացմանը կարող են օգնել նաև նրանք, ովքեր աշխատում են այլ վայրերում։ Դրա համար հարկավոր է ամենուրեք, որտեղ կատարվում են Տյումենի պատվերները՝ Ուկրաինայում, Ադրբեջանում, Թբիլիսիում, Մոսկվայում, երկրի բոլոր ծայրերում, կոմերիտական շեֆություն ստանձնել դրանց նկատմամբ, օգնել աշխատանքային ռեսուրսների նվազագույն ծախսումներով հնազանդեցնելու Տյումենի լայնածավալ տարածություններն ու ընդերքը։*



*Կարծում եմ, այս սկզբունքը կկիրառենք նաև մյուս մեծ կառույցների համար։ Այդպիսի փորձ արդեն կա։ Դա, օրինակ, լենինգրադցիների նախաձեռնությունն է նորակառույցների բոլոր պատվերները ժամկետից շուտ կատարելու ուղղությամբ։* **(Ծափահարություններ)**։ *Տարածեցեք, ընկերներ, այդ նախաձեռնությունը երիտասարդության շրջանում ամենուրեք, անդուլ վերահսկողության տակ առեք երկրի կառույցների պատվերները։ Թող «Կոմերիտական լուսարձակը» իր լույսով հանգիստ չտա, շլացնի նրանց աչքերը, ովքեր վիժեցնում են այդ պատվերների կատարումը։* **(Ծափահարություններ)**։

*Հիմա գյուղատնտեսության մասին։*

*Անկասկած, մենք շատ հաջողությունների ենք հասել կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման գործում։ Սակայն դեռ շատ բան էլ պետք է արվի, որպեսզի հուսալիորեն բավարարվեն սովետական մարդկանց աճող պահանջները, արդյունաբերության պահանջները։ Այդ նպատակների ուղղությամբ են կողմնորոշված մեր ընթացիկ պլանները, ինչպես նաև այն նոր նախագծերը, որոնց վրա այժմ աշխատում է կուսակցությունը։ Գյուղատնտեսության և ամենից առաջ անասնապահության արդյունավետության վերելքը կարևորագույն խնդիրն է։*

*Ուղղակի կասեմ՝ առանց երիտասարդության ակտիվ մասնակցության դժվար կլինի նրա լուծումը։*

*Այստեղ առաջին խոսքը, իհարկե, պատկանում է գյուղական երիտասարդությանը։ Նա մարմնավորում է ապագան և մեծապես որոշում սովետական գյուղի ներկան։ Այժմ մեր գյուղատնտեսական արտադրությունը աներևակայելի է առանց մեքենաների։ Ահա թե ինչու մենք սկզբունքային նշանակություն ենք տալիս կոմերիտմիության կոչին՝ «Ապրում ես գյուղում՝ տիրապետիր տեխնիկային»։ Գյուղական պատանիների և աղջիկների տեխնիկական ուսուցումը պետք է իսկապես մասսայական դառնա։*

*Մեր գյուղը փոխում է իր դեմքը։ Վերջին 13 տարում այնտեղ կառուցվել են բնակելի տներ՝ 450 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ։ Դա քիչ չէ, ընկերներ, պատերազմից առաջ այդքան էր ՍՍՀՄ քաղաքների ամբողջ բնակարանային ֆոնդը։ Գյուղը զարդարել են կուլտուրայի տները, առևտրական կենտրոնները, սրճարանները, որոնք երբեմն՝ քաղաքայիններին չեն զիջում։ Էլ ով, եթե ոչ երիտասարդությունը, կոմերիտմիությունը պետք է լինի այդ փոփոխությունների գլխավոր շարժիչ ուժը, կառավարի նոր տեխնիկան, կառուցի ժամանակակից գյուղը, այնտեղ արմատավորի բարձր կուլտուրա։* **(Ծափահարություններ)**։

*Իհարկե, հրամանով չես կարող ստիպել մնալ գյուղում։ Գյուղում կյանքի և աշխատանքի լավ պայմանների ստեղծում, հողագործի աշխատանքի նկատմամբ հարգանքի, հայրենի բնության, մայր հողի նկատմամբ սիրո, նրա վրա խնամք թափելու կարողության ու ցանկության դաստիարակում՝ ահա դպրոցների ու ֆերմաների աշխատանքում աճող սերնդին ներգրավելու մեր մեթոդը։*

*Կհիշեցնեմ Կոստրոմայի մարզի դպրոցների շրջանավարտների նախաձեռնության մասին։ Նրանք ցանկություն հայտնեցին աշխատել գյուղում։ Պատրաստվելով հանդիպելու ձեզ հետ, ես հետաքրքրվեցի, թե ինչպես են նրանք այժմ ապրում։ Եվ ինձ հաղորդեցին, որ երեկվա այդ դպրոցականները դարձել են լավ հողագործներ, անասնապահներ, մեխանիզատորներ, ընտելացել են իրենց հիանալի, ազնիվ գործին։ Նրանք երիտասարդական կոլեկտիվներ են ստեղծել ֆերմաներում, տիրապետել նոր մասնագիտությունների։ Շատերը շարունակում են ուսումը։ Նրանք արդեն տասնյակ հազարավոր հետևորդներ ունեն մեր մեծ հայրենիքի տարբեր ծայրերում։*

*Կուսակցությունը շնորհակալություն է հայտնում այն պատանիներին ու աղջիկներին, որոնք իրենց բախտը կապել են գյուղատնտեսության զարգացման*

վիճխարի ծրագրի հետ, և բարձր է գնահատում նրանց նախաձեռնությունը։ Դա լավ օրինակ է երիտասարդության համար։ **(Երկարատև ծափահարություններ)**։ Կարծում եմ, դա այսուհետև էլ առանց ընդօրինակման չի մնա։ **(Ծափահարություններ)**։

Հսկայական նշանակություն ունի այն աշխատանքը, որ կատարում են կոմերիտականները, օգնելով՝ կենսագործելու կուսակցության որոշումը ՌՍՖՍՀ ոչ-սևահողային գոտու գյուղատնտեսությունը վերափոխելու մասին։ Բարեկամներ, այսուհետև ևս բարձր պահեք լենինյան կոմերիտմիության դրոշը այդ հարվածային երիտասարդական կառույցում։ **(Երկարատև ծափահարություններ)**։

Այս օրերին երկրի դաշտերում եռում են գարնան դաշտային աշխատանքները։ Թույլ տվեք գյուղական երիտասարդությանը, կոլտնտեսությունների և սովխոզների բոլոր աշխատավորներին մաղթել, որ նրանք այդ աշխատանքները կատարեն բարձր, որակական մակարդակով, մաղթել բարի ծիլեր, իսկ գլխավորը՝ որ նրանք ժողովրդին ուրախացնեն լավ բերքով։ **(Ծափահարություններ)**։

Խոսելով գյուղի պրոբլեմների մասին, ուզում եմ դիմել նաև քաղաքային երիտասարդությանը։ Բերքը և ֆերմաների արդյունավետության հիմքը այժմ դրվում է նաև քաղաքում։ Բանվորի աշխատանքից մեծապես կախված է հողագործի և անասնապահի աշխատանքի վերջնական արդյունքը։ Իսկ դա նշանակում է, որ երիտասարդ քաղաքաբնակները այստեղ կարևոր դեր կարող են խաղալ։ Մտնելով սոցիալիստական մրցության մեջ գյուղը ամեն անհրաժեշտ բանով՝ տեխնիկայով և պարարտանյութերով, շինանյութերով, անասնապահության սարքավորումներով հստակորեն ապահովելու համար, ինչպես նաև օգնություն ցույց տալով գյուղական շինարարությանը, նրանք մեծ գործ արած կլինեն։

Եվ էլի մի կարևոր խնդիր, ընկերնե՛ր։ Մեր էկոնոմիկայի աճի և սովետական մարդկանց բարեկեցության աճի համեմատ նրանց կյանքում ավելի ու ավելի մեծ նշանակություն են ստանում հասարակական գործունեության այնպիսի ոլորտներ, ինչպիսիք են առևտուրն ու կենցաղային սպասարկումը։ Ես արդեն առիթ ունեցել եմ ասելու այն մասին, թե ինչպիսի հսկայական նշանակություն ունեն դրանք մարդկանց տրամադրության և առողջության, ուրեմն և՛ նրանց հաջող աշխատանքի համար։ Դա, ըստ երևույթին, ամեն ոք իր փորձից գիտե։ Մինչդեռ մեզանում հենց այդ բնագավառներում մինչև օրս, ինչպես դուք, իհարկե, գիտեք, շատ կան թերություններ, երբեմն նույնիսկ աղաղակող թերություններ։ Այստեղ պատճառները տարբեր են. դրանք թե՛ նյութական, թե՛ կազմակերպական, թե՛ բարոյական բնույթի պատճառներ են։ Բայց պարզ է մի բան՝ հարկավոր է կարգ ու կանոն հաստատել։ **(Ծափահարություններ)**։

Եվ ես կարծում եմ, կոմերիտմիությունը պետք է իր մշտական և անդուլ խնամակալության տակ առնի առևտրի և սպասարկման ոլորտը։ Նրա նկատմամբ արդյունավետ շեֆություն հաստատեցեք։ Ավելի խոր ուսումնասիրեցեք գործերի վիճակը, օգնեցեք թե՛ նոր մարդկանցով, թե՛ այնտեղ արդեն աշխատողների դաստիարակությամբ, թե՛ հասարակական կարծիքի մոբիլիզացումով, թե՛ տնտեսական, վարչական մարմիններին ուղղված նախաձեռնություններով։ Ըստ իս, դա օգտակար կլիներ։ Ձեռք զարկեք, հապա, այդ գործին, բարեկամներ։ **(Երկարատև ծափահարություններ)**։

Եվ այսպես, ընկերնե՛ր, գործեր շատ կան, աշխատանքը կբավականացնի։ Գուցե ոմանք մտածում են, թե ես ձեր առջև անչափ շատ խնդիրներ եմ դնում։ Բայց չէ որ դուք, կոմերիտականներդ, հիմա արդեն համարյա 38 միլիոն եք։ Ինչպիսի ուժ։ **(Բուռն, երկարատև ծափահարություններ)**։ Ձեզ համար, ընկերներ, ամեն ինչ պետք է մատչելի լինի։ **(Ծափահարություններ)**։

Իսկ այժմ ամենաանհետաձգելին՝ ընթացիկ տարվա պլանը ոչ միայն կատարելը, այլև գերակատարելն է։ Դա բացառիկ կարևոր է ամբողջությամբ վերցրած հնգամյակը կատարելու համար։ Այժմ դրան պետք է նպատակամղվեն կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, բոլոր աշխատավորների ջանքերը։ Ձեզանից, երիտասարդությունից այստեղ շատ ու շատ բան է կախված։ Եվ մենք հավատում ենք, որ դուք ամոթով չեք անի։ **(Երկարատև ծափահարություններ)**։



## II.

Թանկագին ընկերնե՛ր։ Մեր բոլոր պլանների իրականացումը վերջին հաշվով կախված է մարդկանցից, նրանց գիտելիքներից, կուլտուրայից, քաղաքական գիտակցությունից։

Կոմունիզմի ճանապարհին մեր գլխավոր կողմնացույցը մարքս-լենինյան ուսմունքն է հասարակության զարգացման օրենքների մասին։ Հնարավոր չէ գերագնահատել այդ հեղափոխական գիտության խոր ու սիստեմատիկ յուրացման նշանակությունը։ Գիտակցական, լրջախոհ յուրացման, և ոչ թե առանձին ճշմարտությունների ու ֆորմուլաների մեխանիկական սերտման։ Միայն այն ժամանակ տեսության իմացությունը ինչ-որ բան արժե, երբ այն դառնում է համոզմունք, ամրապնդվում գործով։ Այլ կերպ ասած, յուրաքանչյուր երիտասարդ լենինյան պետք է լինի ակտիվ քաղաքական մարտիկ՝ ընդունակ գործով իրականացնելու կուսակցության քաղաքականությունը և անհաշտ պայքար մղելու թշնամական գաղափարախոսության դեմ։ **(Ծափահարություններ)**։

Կուսակցությունը և կոմերիտմիությունը մեծ ուշադրություն են նվիրում երիտասարդության բարոյական դաստիարակությանը։ Կոմունիստական բարոյականության նորմաների և սկզբունքների հաստատումը անհնար է, առանց մշտական և հաստատակամ պայքար մղելու հակահասարակական դրսևորումների, հոգեկան աղքատության և նրա անխուսափելի ուղեկիցների՝ հարբեցողության, խուլիգանության, աշխատանքային կարգապահության խախտումների դեմ։ Պակաս վտանգ չեն ներկայացնում նաև անբարոյականության թաքնված, առաջին հայացքից ոչ միշտ նկատելի դրսևորումները։ Անտարբերությունը, խնամառությունը, ցինիզմը, հավակնությունները՝ ստանալու ավելին, քան տալիս են հասարակությանը, նման բարոյական արատները չպետք է գտնվեն կոմերիտմիության, ինչպես և մեր ամբողջ հասարակայնության տեսադաշտից դուրս։

Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման նկատմամբ հոգատարությունը կուսակցության ներքին քաղաքականության գլխավոր ուղղությունն է։ Ընդ որում, մենք նկատի ունենք մարդկանց կյանքի թե՛ նյութական մակարդակի աճը, թե՛ կուլտուրական մակարդակի աճը։ Մեկը չի կարելի մյուսից անջատել։

Մենք մերժում ենք ինչպես աղքատության և ճգնավորության քարոզը, այնպես էլ սպառման պաշտամունքը, քաղքենու հոգեբանությունը, որի համար կոպեկը, Գորկու դիպուկ արտահայտությամբ, արև է նրա երկնքում։ Նյութական բարիքները մեզ համար ինքնանպատակ չեն, այլ անհատի համակողմանի զարգացման նախադրյալ։ Ուստի կարևոր է, որ բարեկեցության բարձրացումը ուղեկցվի մարդկանց ներաշխարհի հարստացմամբ, կյանքի նպատակի և իմաստի ճիշտ ըմբռնման ձևավորմամբ։

Սովետական մարդկանց, այդ թվում, իհարկե, երիտասարդության կրթության և իրազեկության բարձր մակարդակը լրջորեն բարձրացնում է նաև դաստիարակչական աշխատանքի ոճին ներկայացվող պահանջները։

Այստեղ հատկապես անհանդուրժելի են անհոգության և ձևամոլության դրսևորումները։ Ժամանակն է, որ գաղափարական ճակատի բոլոր աշխատողները վերջ տան տարրական ճշմարտությունների մեխանիկական, չմտածված կրկնության՝ տեղ-տեղ դեռևս արմատախիլ չարված պրակտիկային, բառային ճարճատյունին։ Ժամանակն է կանոն դարձնել մարդկանց հետ պարզ ու մատչելի լեզվով խոսելը, գրել՝ յուրաքանչյուր նախադասության մեջ դնելով կենդանի միտք և զգացմունք։ Դա նույնպես որակի և արդյունավետության հարց է, ընդ որում, կոմունիզմի կառուցման այնպիսի կարևոր տեղամասում, ինչպիսին է նոր մարդու դաստիարակությունը։

Կուսակցությունը և կոմերիտմիությունը մեր հասարակության երիտա-

նմրդ քաղաքացիներին դաստիարակում են որպես սովետական հայրենիքի հավատարիմ որդիներ ու դուստրեր, կոմունիզմի գործի համար պայքարող կայուն մարտիկներ։ Այդ հատկությունները դառնում են միլիոնավոր մարդկանց մեծագործություններ, բազմապատկում են հայրենիքի հզորությունը և ժողովրդի բարեկեցությունը։

Հենց վերջերս Ուրալում, Սիբիրում և Հեռավոր Արևելքում կատարած ուղևորության ժամանակ ես հսկայական գոհունակությամբ կարողացա մեկ անգամ ևս ակնբախորեն համոզվել, թե ինչպիսի հրաշալի մարդիկ են աշխատում այդ բազմահարուստ, բայց շատ բանում դեռևս խստաշունչ երկրամասերում, ինչպիսի հոյակապ երիտասարդություն կա այնտեղ։ Կարելի է ասել, որ նա այդ վայրերի կլիման տաքացնում է իր նվիրված սրտերի ջերմությամբ։ (Բուռն ծափահարություններ):

Առանձնապես հիշողությանս մեջ մնացել են հանդիպումները Բայկալ—Ամուր մայրուղու մի խումբ երիտասարդ շինարարների հետ՝ կայարաններից մեկում և Ամուրի Կոմսոմոլսկ քաղաքի երիտասարդության հետ։ Դրանք հիանալի տղաներ ու աղջիկներ էին։ Իրենց աշխատանքի, իրենց կյանքի մասին նրանք խոսում էին հոգացողությամբ, գործիմացությամբ և դրա հետ մեկտեղ՝ հափշտակությամբ։ Նրանց աչքերն ասես հառված էին ապագային։ Լսում էի ես նրանց, և միտքս եկան հայտնի երգի տողերը՝ «Մենք նվաճում ենք տարածությունն ու ժամանակը, մենք երիտասարդ տերերն ենք երկրի»։ (Երկարատև ծափահարություններ):

Սովետական մարդկանց հրաշալի հատկությունները դրսևորվում են նաև մեր փառապանծ զինված ուժերի շարքերում։ Այստեղ երիտասարդությունն իսկական կոփվածք է ստանում։ Այստեղ նա ոչ միայն յուրացնում է կազմակերպվածություն, կարգապահություն, այլև ցուցաբերում է բարձր գիտակցականություն, անձնվիրություն, երբեմն էլ՝ իսկական հերոսություն։ (Ծափահարություններ):

Արևելք կատարած իմ ուղևորության ժամանակ ես ծանոթանա նաև այն բանին, թե ինչպես է դրված մեր սահմանների պաշտպանության գործը, և նրանց հետ, ովքեր այնտեղ կատարում են իրենց դժվարին ծառայությունը, մեր բանակի, մեր ռազմածովային նավատորմի, մեր սահմանապահ զորքերի պանծալի ռազմիկների հետ։ Կասեմ մի բան, ընկերներ, հայրենիքի սահմանները հուսալիորեն պաշտպանված են ամեն մի անակնկալից, նրա պաշտպանության գործը գտնվում է հմուտ, հուսալի ձեռքերում։ (Երկարատև ծափահարություններ): Եվ կարող եմ հավաստիացնել, որ սովետական երկրի երիտասարդները, որոնք պահպանում են հայրենիքի խաղաղությունն ու անդորրությունը, ամեն անհրաժեշտ բան ունեն՝ կատարելու իրենց վեհ առաքելությունը։ (Երկարատև ծափահարություններ):

Ընկերնե՛ր։ Սովետական մարդիկ, որոնք մեծացել են ժողովուրդների եղբայրական ընտանիքում, դաստիարակվել մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով, իրենց բուն էությամբ ինտերնացիոնալիստներ են։ Ինտերնացիոնալիստական ավանդույթները նրանց գործերի մեջ այսօր, թերևս, ավելի լայնորեն, ավելի բազմակողմանիորեն են մարմնավորվում, քան երբևիցե։ Եվ երիտասարդությունն այստեղ, ինչպես որ ուրիշ շատ բաներում, գտնվում է առաջին շարքերում։

Աշխարհի ավելի քան հարյուր պետություններում այժմ աշխատում են լենինյան կոմերիտմիության պատվիրակները։ Եվրոպայի սոցիալիստական երկրներում և հեռավոր Կուբայում, Սահարայի տաք ավազուտներում և Հարավ-Արևելյան Ասիայի ջունգլիներում, Հնդկաստանում և արաբական արևելքում, մոլորակի ամենատարբեր շրջաններում մեր երկրի հազարավոր որդիներ ու դուստրեր կատարում են իրենց ազնիվ հերթափոխը՝ կառուցում են գործարաններ և էլեկտրակայաններ, օգնում են հայտնաբերելու բնության գանձերը, բուժում են հիվանդներին և սովորեցնում երեխաներին։ Հաճախ նրանց աշխատանքը առանց աղմուկի և աղդարարման իսկական, անշահախնդիր, անձնվեր սխրանք է։ (Ծափահարություններ): Սխրանք՝ հանուն խաղաղության և առաջադիմության, հանուն ժողովուրդների եղբայրության և բարեկամության։ (Ծափահարություններ): Սխրանք, որը է՛լ ավելի է բարձրացնում մեր հայրենիքի հեղինակությունը, օգնում է հասկանալու ճշմարտությունը մեր սոցիալիստական կարգերի մասին, կոմունիստական բարոյականության և սովետական մարդկանց իդեալների մասին։

Եկեք, ընկերնե՛ր, անկեղծ շնորհակալություն ասենք մեր ժողովրդի այդ արժանավոր ներկայացուցիչներին։ (Ծափահարություններ): Նրանք օգնում են կենսագործելու մեր կուսակցության, սովետական պետության լենինյան խաղաղասիրական քաղաքականությունը, օրեցօր իրականացնում են ինտերնացիոնալիզմը գործով, որն այնպես բարձր էր դասում Վլադիմիր Իլյիչ Լենինը։

Պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմը մեր մեծ ուժն է։ Դա մեր համոզմունքների պտուղն է և մեր սրտերի կրակը։ Դա մեր դրոշն է։ Ուրեմն՝ միշտ հավատարիմ եղեք նրան, թանկագին բարեկամներ։ (Բուռն, երկարատև ծափահարություններ):

## III.

Ընկերնե՛ր։ Ձեր հայրերի ջահելությունը անցել է Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատների ճանապարհներին՝ զինվորի շինելով։ Դա, հիրավի, «կռիվ էր ոչ թե հանուն փառքի, այլ հանուն կյանքի երկրի վրա»։ (Ծափահարություններ): Անցել են տասնամյակներ։ Այսօր արդեն երկրի բնակչության կեսից ավելին միայն մեծերի պատմածներով, գրքերից ու կինոնկարներից գիտի, թե ինչ է պատերազմը, նրա զրկանքներն ու տառապանքները։ Բայց հիմա էլ, այլ պայմաններում, շարունակվում է կռիվը հանուն կյանքի երկրի վրա։ Ապահովել կայուն, հաստատուն խաղաղություն՝ սա է մեր արտաքին քաղաքականության, նրա այնպիսի կարևորագույն սկզբունքների նպատակը, ինչպիսիք են խաղաղ գոյակցությունը, միջազգային լարվածության թուլացումը։

Լարվածության թուլացումն այսօր ոչ տեսություն է, ոչ լոզունգ, ոչ էլ բարի ցանկություն։ Նրա հաշվում գրանցված են ոչ քիչ թվով միանգամայն կոնկրետ ու շոշափելի բարի գործեր։ Եվրոպայում այն դրվեց պետությունների փոխհարաբերությունների հիմքում, ընդգրկեց նրանց կյանքի տարբեր կողմերը։ Այժմ, չնայած բոլոր կոնյունկտուրային տատանումներին, նորովի, խաղաղության գործի համար ավելի բարենպաստ տեսքով են երևում նաև սովետաամերիկյան հարաբերությունները։ Լարվածության թուլացման ուղին ժողովուրդները ընդունել և պաշտպանում են որպես միակ խելացի ուղին մեր դժվարին ժամանակներում։

Մեր օրերում ամենաէական, ամենաանհետաձգելի գործն է՝ հասնել պատերազմի վտանգի հետագա թուլացման, կանգնեցնել սպառազինությունների աճը։ Դա զգում են բոլոր ժողովուրդները, ընդունում է կառավարությունների մեծ մասը։ Այդ մասին է վկայում նաև այն փաստը, որ մի քանի շաբաթ հետո, պատմության մեջ առաջին անգամ, կբացվի ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի նստաշրջանը, որը հատկապես նվիրված է սպառազինությունների սահմանափակմանը, զինաթափմանը։ Մենք նստաշրջանին հաջողություն ենք մաղթում և ակտիվորեն կնպաստենք դրան։

Մենք հանդես ենք գալիս հանուն ընդհանուր և լրիվ զինաթափման։ Բայց մեր մեղքով չէ, որ փակուղի են մտել այդ պրոբլեմների վերաբերյալ արդեն շուրջ քսանամյա բանակցությունները։ Սակայն այդ ժամանակամիջոցում, այնուամենայնիվ, համաձայնագրեր են կնքվել որոշ բնագավառներում սպառազինությունների սահմանափակման շուրջ։ Իսկ մի շարք հարցերի առթիվ բանակցությունները շարունակվում են։

Նվազեցնել նոր համաշխարհային պատերազմի առաջացման, միջուկային զենքի օգնությամբ մարդկանց մասսայական բնաջնջման սպառնալիքը՝ ահա արդի պայմաններում խաղաղության համար մեր պայքարի գլխավոր ուղղությունը։ Այդ նպատակով Սովետական Միությունը ձեռնարկում է մի շարք խոշոր գործողություններ։ Դրանցից մեկը Միացյալ Նահանգների հետ բանակցություններն են ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման վերաբերյալ։

Մոսկվայում, ինչպես գիտեք, հենց վերջերս եղավ ԱՄՆ-ի պետական քարտուղար Վենսը, որը եկել էր պրեզիդենտ Քարտերի հանձնարարությամբ։ Տեղի ունեցավ կարծիքների հանգամանալի փոխանակություն։ Ի վերջո հաջողվեց որոշ չափով առաջ շարժել ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման համաձայնագրի նախապատրաստությունը։ Դեռ բնավ ոչ բոլոր հարցերն են լուծված։ Ամերիկյան կողմի մի քանի դիրքավորումներին մենք ոչ մի կերպ չենք կարող համաձայնել։ Սակայն, կարծում եմ, որ երկուստեք ջանքերով կարելի է խելացի, ռեալիստական փոխզիջման հիման վրա ավարտել այն համաձայնագրի մշակումը, որը արդարացիորեն հաշվի կառնի երկու պետությունների անվտանգության շահերը։ Դա թույլ կտա նկատելիորեն կասեցնել սպառազինությունների մրցավազքը, ուրեմն և կօգնի խաղաղության ամրապնդմանը։

Ահա արդեն մի շարք տարիներ Սովետական Միությունը ձգտում է հասնել այն բանին, որ կնքվի միջուկային զենքի փորձարկումների ընդհանուր և լրիվ արգելման համաձայնագիր։ Այժմ մենք ԱՄՆ-ի և Անգլիայի հետ բանակցություններ ենք վարում բոլոր միջավայրերում (այսինքն՝ նաև գետնի տակ) փորձարկումներն արգելելու մասին։ Եվ կարելի է գոհունակությամբ նշել, որ այդ բանակցություններում վերջին ժամանակներս որոշակի առաջխաղացում կա։ Կկամենայինք հուսալ, որ գործը մինչև վերջ կհասցվի և ոչ հեռու ապագայում կստորագրվի համապատասխան պայմանագիր։ Դա նկատելի հաջողություն կլինի խաղաղության և մարդկանց անվտանգության համար մղվող պայքարում։

Մեր մոլորակի մյուս խաղաղասեր ուժերի հետ միասին Սովետական Միությունը ակտիվ ջանքեր է գործադրում, որպեսզի թույլ չտա մասսայական բնաջնջման նոր, առանձնապես հակամարդկային միջոցի՝ նեյտրոնային զենքի ստեղծում։ Այդ հարցում մեր դիրքը սպառիչ կերպով պարզ է և արմատական. քանի դեռ ուշ չէ, հասնել համապատասխան պետությունների համաձայնության՝ փոխադարձաբար հրաժարվելու այդ զենքի արտադրությունից։ Եվ թող մարդկությունը մեկընդմիշտ փրկվի նրա ի հայտ գալուց։

Միացյալ Նահանգները, որոնք նախապատրաստվել են նեյտրոնային ռումբի ստեղծման, ցավոք, առայժմ դեռ չեն համաձայնել մեր առաջարկությանը։ Բայց պրեզիդենտ Քարտերը վերջերս հայտարարեց, որ ինքը հետաձգել է նեյտրոնային զենքի արտադրությունն սկսելու վերջնական որոշման ընդունումը։ Դա, իհարկե, չի վերացնում հարցը, դա, լավագույն դեպքում, կիսամիջոց է։ Սակայն ես կարող եմ հաղորդել, որ, հաշվի առնելով պրեզիդենտի այդ հայտարարությունը, մենք նույնպես չենք սկսի նեյտրոնային զենքի արտադրությունը, եթե այդ բանը չանեն Միացյալ Նահանգները։ Հետագան կախված կլինի Վաշինգտոնից...

Միջուկային պատերազմի սպառնալիքի նվազեցման իր սկզբունքային գծին համապատասխան, Սովետական Միությունը որոշում է ընդունել նաև համապատասխան ձևով միանալ Լատինական Ամերիկայում միջուկային զենքի արգելման միջազգային պայմանագրին։ Դրանով իսկ մենք, ինչպես որ միջուկային զենք ունեցող մյուս տերությունները, մեզ վրա պարտավորություն կվերցնենք չնպաստել լատինաամերիկյան պետությունների հաղորդակցմանը միջուկային զենքին, ինչպես նաև չգործադրել այդպիսի զենք պայմանագրի մասնակից պետությունների նկատմամբ։

Այնպես որ, տեսնում եք, ընկերնե՛ր, խաղաղության օգտին աշխատանքը շարունակվում է, և մեր հայրենիքը այդ նպատակներով նորանոր ջանքեր է ձեռնարկում։ (Երկարատև ծափահարություններ)։

Մենք կձգտենք այն բանին, որ շուտով ԳՖՀ կատարելիք իմ այցը ևս օգնի ոչ միայն որոշելու մեր երկու երկրների հետագա փոխշահավետ լայն համագործակցության հեռանկարները (որ արդեն ինքնըստինքյան կարևոր է), այլև ծառայի լարվածության թուլացման խորացման և ընդհանուր խաղաղության ամրապնդման գործին, հատկապես Եվրոպայում։

Վերջին ժամանակներս ՆԱՏՕ-ի երկրների՝ լարվածության թուլացման և



զինաթափման հակառակորդները, բոլոր այդ պոլիտիկանություն անող գեներալները և ռազմատենչ քաղաքագետները պրոպագանդիստական աղմուկ բարձրացրին և շարունակում են աղմկել՝ տարածելով հերյուրանքներ Եվրոպայում ՆԱՏՕ-ի բլոկի նկատմամբ Վարշավայի պայմանագրի պետությունների իբր սպառնացող ռազմական գերակշռության վերաբերյալ. Եվրոպայում Սովետական Միությանը վերագրվող ինչ-որ ագրեսիվ դիտավորությունների մասին և նման այլ բաներ։ Իհարկե, այս ամենը բարբաջանք է։ Բայց ոչ անմեղ, այլ չարամիտ բարբաջանք, քանի որ դա արդարացում և քողարկում է ծառայում իսկապես վտանգավոր և պոտենցիալ կերպով ագրեսիվ գործողությունների համար՝ սպառազինությունների մրցավազքը նոր մակարդակի բարձրացնելու, ռազմական ուժերը մեծացնելու, միջազգային մթնոլորտը վախի, կասկածների և թշնամության թունավոր գոլորշիներով հագեցնելու համար։

Ոչ ոք ավելի, քան Սովետական Միությունը, որը ամենքից ծանր կերպով է տուժել երկրորդ համաշխարհային պատերազմից, չի ցանկանում, որ Եվրոպայում խաղաղությունը այլևս երբեք չխախտվի, որ նա միշտ դառնա կայուն խաղաղության և խաղաղ համագործակցության մայրցամաք։ Եվ, թերևս, ոչ մի պետություն դրա համար այնքան շատ բան չի արել, որքան մեր երկիրը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Ահա արդեն մի քանի տարի է, ինչ մենք Վիեննայի բանակցություններում ձգտում ենք հասնել այն բանին, որ Եվրոպայում Արևմուտքի և Արևելքի ռազմական ուժերի մակարդակը զգալիորեն նվազեցվի, առանց վնաս հասցնելու կողմերից որևէ մեկի անվտանգությանը, բայց առայժմ ի պատասխան հանդիպել ենք միայն Արևմուտքի փորձերին՝ փոխելու ուժերի հարաբերակցությունը իր օգտին։ Ճիշտ է, օրերս արևմտյան երկրները Վիեննայում մտցրեցին որոշ չափով նորացված առաջարկություններ։ Դրանցում ինչ-որ չափով հաշվի են առնվում սոցիալիստական պետությունների նկատառումները, թեև միակողմանի մոտեցման ընդհանուր կնիքը ակնհայտորեն պահպանվում է։ Դե, ինչ կա որ, կշարունակենք աշխատել։ Մենք պատրաստ ենք մեզանից կախված ամեն բան անել՝ գտնելու փոխադարձաբար ընդունելի լուծումներ, որպեսզի թուլացնենք ռազմական լարվածությունը աշխարհի այն շրջանում, որտեղ նա հատկապես մեծ է ու վտանգավոր։ (Ծափահարություններ)։

Ամենքը պետք է գիտենան, որ Սովետական Միությունը ոչ միայն որևէ ագրեսիվ դիտավորություն չի տածում և Եվրոպայում ոչ մի «հարվածային բռունցք» չի կուտակում Արևմուտքի դեմ գործողությունների համար, այլ, ընդհակառակն, արել է և կանի ամեն ինչ, որպեսզի թուլացնի լարվածությունը և նպաստի պայմանագրությանը։ Ի տարբերություն ՆԱՏՕ-ի երկրների, մենք արդեն վաղուց չենք մեծացնում մեր զինված ուժերը Կենտրոնական Եվրոպայում և մտադիր չենք, ուզում եմ դա ամբողջ ուժով ընդգծել, մտադիր չենք այսուհետև ևս դրանք մեծացնել ոչ մի զինվորով, ոչ մի տանկով։ (Ծափահարություններ)։

Եվ մենք արևմտյան պետություններին կոչ ենք անում հետևել այդ լավ օրինակին։

Փորձելով խեղաթյուրել Սովետական Միության արտաքին քաղաքականության իմաստն ու նպատակները, իմպերիալիստական պրոպագանդան պնդում է, թե, իբր, ինչ-որ հակասություն գոյություն ունի լարվածության թուլացման, խաղաղ գոյակցության մեր երկրի կուրսի և գաղութային ճնշումից ազատագրված պետությունների հետ մեր հարաբերությունների միջև։ Սովետական Միությանը և մյուս սոցիալիստական երկրներին փորձում են վերագրել միջամտություն երիտասարդ պետությունների գործերին։ Բանը նույնիսկ հասցնում են այնտեղ, որ բարդում են «էքսպանսիայի քաղաքականության» և «լարվածության ուժեղացման» մեղադրանքներ։ Այս ամենը, անշուշտ, զտագույն հերյուրանք է, որը իրականության հետ ընդհանուր ոչինչ չունի։

Մենք ուզում ենք այդ երկրների հետ զարգացնել բարեկամական համագործակցություն՝ լիակատար իրավահավասարության սկզբունքներով։ Մենք պաշտպանում ենք նրանց անկախությունը, նրանց զարգացումը խաղաղության

և սոցիալական առաջադիմության ուղիով։ ՍՍՀՄ-ը անշեղորեն հանդես է գալիս այդ, ինչպես և մյուս բոլոր պետությունների սուվերենությունը խստիվ հարգելու օգտին, նրանց ներքին գործերին չմիջամտելու օգտին, նրանց սահմանների անձեռնմխելիության օգտին։ (Ծափահարություններ)։

Բայց ահա իմպերիալիստական տերությունները, բացահայտորեն կամ թեթևակիորեն քողարկված, մշտապես միջամտում են անկախ, ազատագրված պետությունների գործերին։ Միջամտում են, որպեսզի խոչընդոտեն նրանց առաջադիմական զարգացմանը։ Սահմանափակում են նրանց սուվերենությունը, որպեսզի ապահովեն իրենց մոնոպոլիաների շահագիտական նպատակները կամ իրենց ռազմական ստրատեգների պլանները։

Այդպիսի միջամտությունը, որպես կանոն, տանում է դեպի բռնություն և ժողովուրդների իրավունքների ոտնահարում։ Դա տեղի է ունենում կամ համապատասխան պետությունների ներքին կյանքում, ինչպես, օրինակ, Չիլիում, կամ բացահայտ արտաքին ագրեսիայի ձևով, որի օրինակ են ծառայում Իսրայելի կառավարողների լկտի գործողությունները։

Փաստերը վկայում են, որ երիտասարդ պետությունների ժողովուրդները նույնքան հաջող են պաշտպանում իրենց անկախությունը, իրենց կենսական շահերը, որքան ամուր է այդ պետությունների միասնությունն ու համերաշխությունը, որքան ամուր է նրանց բարեկամությունը սոցիալիստական աշխարհի երկրների հետ, որի աջակցությամբ նրանք կարող են ապավինել իրենց արդար գործում։ (Ծափահարություններ)։

Օրինակների համար այստեղ էլ հեռուն գնալ պետք չէ։ Հենց առաջադիմական ուժերի համերաշխության շնորհիվ հաջողվեց վիժեցնել իմպերիալիզմի և նրա դրածոների փորձերը՝ տապալելու ժողովրդական իշխանությունը Անգոլայում, անդամահատելու հեղափոխական Եթովպիան։

Խաղաղություն, ներքին գործերին չմիջամտել, անկախության և տերիտորիալ ամբողջականության հարգում, իրավահավասարություն, փոխշահավետ համագործակցություն՝ այս ամենը հենց լարվածության թուլացման և կայուն խաղաղության անհրաժեշտ և ամենակարևոր տարրերն են։ Այդպիսին է մեր քաղաքականությունը Եվրոպայում, այդպիսին է այն նաև Աֆրիկայում, նաև Ասիայում, Լատինական Ամերիկայում, աշխարհի բոլոր մասերում։ Եվ եթե որևէ մեկը կարծում է, թե զրպարտչական հերյուրանքների ու սպառնալիքների օգնությամբ կարելի է Սովետական Միությանը շեղել այդ կուրսից, ապա նա խորապես սխալվում է։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր, վերլուծելով աշխարհում տիրող իրադրությունը, մենք գալիս ենք այն հաստատ համոզման, որ հասել է ժամանակը մտածելու **ռազմական խոշոր պոտենցիալ ունեցող պետությունների սպառազինությունների և զինված ուժերի քանակական և որակական հետագա աճը լրիվ դադարեցնելու մասին** և դրանով իսկ պայմաններ ստեղծելու դրանց հետագա կրճատման համար։ Մենք կոնկրետ կերպով դիմում ենք՝ կոչ անելով քննարկել որոշակի սահմանափակ ժամանակամիջոցի ընթացքում հետևյալ միջոցառումների իրականացման ծրագիրը.

— միջուկային զենքի բոլոր տեսակների արտադրության դադարեցում.

— մասսայական ոչնչացման զենքի բոլոր մյուս տեսակների արտադրության դադարեցում և արգելում.

— կործանարար մեծ ուժի սովորական սպառազինությունների նոր տեսակների ստեղծման դադարեցում.

— հրաժարում անվտանգության խորհրդի մշտական անդամ տերությունների, ինչպես նաև նրանց հետ ռազմական համաձայնագրերով կապված երկրների բանակների ընդլայնումից և սովորական սպառազինությունների ավելացումից։

Իհարկե, այդպիսի բաների շուրջը համաձայնության գալը հասարակ բան չէ։ Ըստ երևույթին, կարելի կլիներ սկսել որևէ մի անկյունից, օրինակ, միջուկային զենքի արտադրության դադարեցումից, ինչպես մենք արդեն առաջարկել ենք։ Իսկ գլխավորը՝ ամբողջ խնդիրը հեշտանում է նրանով, որ այդ քայլերի



իրականացումը չէր խախտի այժմ պետությունների միջև ստեղծված ուժերի հարաբերակցությունը։ Ոչ ոք դրանից տանուլ չէր տա։

Մենք չենք կարող, իրավունք չունենք մոռանալու, որ աշխարհի վրա դեռ կախված է միջուկային զենքի գործադրման սպառնալիքը, ժողովուրդների մեջ ծնելով երկյուղներ իրենց բախտի համար։ Հասկանալի է, որ այդ սպառնալիքի վերացման համար հարկավոր են բոլոր միջուկային պետությունների համատեղ ջանքերը։ Բայց նրանցից յուրաքանչյուրը կարող է և պետք է իր ավանդը մուծի։ Սովետական Միությունը իր կողմից ամենայն որոշակիությամբ հայտարարում է. մենք դեմ ենք միջուկային զենքի կիրառմանը։ Միայն արտակարգ հանգամանքները, մի այլ միջուկային տերության կողմից մեր երկրի կամ նրա դաշնակիցների դեմ կատարված ագրեսիան կարող են մեզ ստիպել դիմելու ինքնապաշտպանության այդ ծայրահեղ միջոցին։ Սովետական Միությունը ամեն ինչ անում է և կանի՝ թույլ չտալու ատոմային պատերազմի առաջացում, որպեսզի ժողովուրդները չդառնան ոչ առաջին, ոչ էլ հաջորդող ատոմային հարվածների զոհերը։ Դա մեր հաստատուն գիծն է, և մենք կգործենք դրան համապատասխան։ (Երկարատև ծափահարություններ)։

Պահպանել մեր հողը, այն երիտասարդ սերնդին հանձնել իր ամբողջ հարստության ու գեղեցկության մեջ, միջուկային հրդեհի բոցով չայլանդակված, ահա թե, մեր համոզմամբ, ինչին պետք է ուղղված լինեն մարդկության խոհերը։ Սովետական Միությունը խաղաղության պահպանման և ամրապնդման համար անում է իրենից կախված ամեն բան։ Եվ մենք հավատում ենք, թանկագին երիտասարդ բարեկամներ, որ ձեր ապագան ազատ աշխատանքի երջանկությունն է խաղաղ մոլորակի վրա։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

***

Ընկերնե՛ր։ Ձեր համագումարը տեղի է ունենում նշանակալի տարեթվի նախաշեմին՝ այս աշնանը կլրանա համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միության 60 տարին։ (Ծափահարություններ)։ Երկիրը, իհարկե, արժանավայել կնշի այդ հոբելյանը։ Իսկ ձեզ խնդրում ենք՝ ձեր տոնը դիմավորել աշխատանքային նոր մեծագործություններով (Ծափահարություններ)։

Կոմերիտմիության տարիքը միանգամայն հասուն տարիք է։ Բայց նրա ոգին միշտ էլ ջահել է։ (Ծափահարություններ)։ Լենինյան կոմերիտմիությունը կուսակցության մարտական օգնականն ու հուսալի ռեզերվն է։ Դուք կուսակցությունից հսկայական, ստուգված փորձ եք վերցնում ձեր միության ամբողջ գործունեության համար։ Եվ դա բնական է։ Չէ որ կուսակցության ու կոմերիտմիության նպատակը մեկ է՝ կոմունիզմը, և ուղին նույնպես մեկ է՝ դա Լենինի ուղին է, ժողովրդին ծառայելու ուղին։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Դուք պետք է լիակատար հաղթանակի հասցնեք ձեր պապերի ու հայրերի սկսած մեծ գործը։ Եղեք, ուրեմն, նրանց արժանի փոխարինողները, բարձր պահեցեք կոմունիզմի դրոշը։ (Բուռն ծափահարություններ)։

Փա՜ռք լենինյան կոմերիտմիությանը՝ սովետական երիտասարդության առաջավոր ջոկատին։ (Բուռն ծափահարություններ)։ Փա՜ռք մեր երկրի երիտասարդ սերնդին։ (Բուռն ծափահարություններ։ Բոլորը ոտքի են կանգնում։ Դահլիճը վանկարկում է՝ «Լենին։ Կուսակցություն։ Կոմերիտմիություն»)։

Կեցցե՜ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, Լենինի կուսակցությունը։ (Բուռն ծափահարություններ։ Դահլիճի կամարների ներքո հնչում է՝ «ՍՄԿԿ-ին փառք», «ուռա՜»)։

Կեցցե՜ կոմունիզմ կառուցող սովետական ժողովուրդը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ։ Հնչում է երկար ժամանակ չլռող օվացիան։ Համագումարի մասնակիցները կեցցեներ են ճչակում ի պատիվ Սովետական Միության կոմունիստական կուսակցության, ՍՄԿԿ Կենտկոմի լենինյան քաղբյուրոյի, լենինյան կոմերիտմիության, վանկարկում են՝ «Լենինը մեզ հետ է»)։

## ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ՝ ՍԻԲԻՐԻ ԵՎ ՀԵՌԱՎՈՐ ԱՐԵՎԵԼՔԻ ՇՐՋԱՆՆԵՐ ԿԱՏԱՐԱԾ ՈՒՂԵՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, լսելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ինֆորմացիան Սիբիրի և Հեռավոր Արևելքի շրջաններ կատարած իր ուղևորության մասին, լիովին հավանություն են տալիս ընկեր Լ. Ի. Բրեժնևի կատարած աշխատանքին:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ուղևորությունը կարևոր նշանակություն ունի երկրի էկոնոմիկայում հարաճուն դեր խաղացող Սիբիրի և Հեռավոր Արևելքի բնական հարստությունների կոմպլեքսային յուրացման և արտադրողական ուժերի զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները կատարելու համար:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմները, մարզկոմները, օկրուգկոմները, քաղկոմները և շրջկոմները, կուսակցական կազմակերպությունները, մինիստրությունները և գերատեսչությունները պետք է գործնական հետևություններ անեն այն ցուցումներից ու հանձնարարականներից, որ ընկեր Լ. Ի. Բրեժնևը արտահայտեց աշխատավորների, կուսակցական-տնտեսական ակտիվի հետ իր հանդիպումների և զրույցների ընթացքում: Խնդիրն այն է, որ երկրի արևելքում այսուհետև ևս մեծացվի ածխի, նավթի, գազի, ամենից առաջ տյումենյան գազի, հանույթը, ավելի լրիվ օգտագործվեն այդ շրջանների հսկայական հիդրոէներգետիկ ռեսուրսները ալյումինի, ցելյուլոզի, նավթաքիմիական արդյունաբերության և մյուս ճյուղերի զարգացման համար:

Առաջնորդվելով այն դրույթով, որ պլանը կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացման գլխավոր գործիքն է, բոլոր կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները պետք է հիմնական ջանքերը կենտրոնացնեն 1978 թվականի և, ամբողջությամբ վերցրած, հնգամյակի պլանային առաջադրանքների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների անվերապահ կատարումն ապահովելու վրա: Ընդ որում, անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել ներքին ռեզերվների ավելի լավ օգտագործման, ձեռնարկությունների նախագծային կարողությունների արագ յուրացման հաշվին արտադրությունն ավելացնելու, «նեղ տեղերը» հաղթահարելու, տնտեսական աշխատանքի յուրաքանչյուր տեղամասում կազմակերպվածությունը, կարգ ու կանոնն ու կարգապահությունը բարձրացնելու վրա:

Տեղական կուսակցական և սովետական մարմինները, մինիստրություններն ու գերատեսչությունները պարտավոր են միջոցներ ձեռնարկել արագացնելու կարևորագույն գործարկվելիք օբյեկտների կառուցումը, բարելավելու



կառույցների նյութատեխնիկական մատակարարումը, վերացնել ստանդարտի աշխատանքում եղած թերությունները, կատարելագործել փոխադրումների պլանավորումը, կարգ ու կանոն հաստատել շարժակազմի օգտագործման ասպարեզում:

Գյուղատնտեսության մեջ ամենից առաջ պետք է ուժերը և ուշադրությունը կենտրոնացնել այն բանի վրա, որ ագրոտեխնիկական բարձր մակարդակով, կարճ ժամկետներում անցկացվի գարնանացանը, ապահովվի մեքենատրակտորային համակազմի բարձր-արտադրողական օգտագործումը գարնան դաշտային աշխատանքների և բերքահավաքի ժամանակ: Արդեն այժմ հարկավոր է ձեռնամուխ լինել հացահատիկի, բանջարեղենի, մրգի պահպանման ու վերամշակման համար անհրաժեշտ նյութական բազայի նախապատրաստմանը: Կարևոր է հասնել այն բանին, որ բնակչության՝ մսի, կաթի, բանջարեղենի պահանջմունքները ավելի ու ավելի լրիվ բավարարվեն տեղում այդ մթերքներն արտադրելու հաշվին՝ միջմարզային մասնագիտացումը և կոոպերացումը խորացնելու հիման վրա:

ՍՍՀՄ պետպլանին, ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդին առաջարկել համապատասխան մինիստրությունների և գերատեսչությունների հետ համատեղ քննության առնել Սիբիրի և Հեռավոր Արևելքի շրջանների սոցիալ-տնտեսական հետագա զարգացմանը վերաբերող այն կոնկրետ հարցերը, որոնք առաջադրվել են ընկեր Լ. Ի. Բրեժնևի կողմից իր ուղևորության ընթացքում:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը նշում են սովետական ռազմիկների հետ ընկեր Լ. Ի. Բրեժնևի հանդիպումների մեծ նշանակությունը սովետական զինված ուժերի անձնակազմի մարտական և քաղաքական պատրաստության հետագա բարձրացման համար:

Պաշտպանության բնագավառում Սովետական Միության գործողությունների նպատակն է պաշտպանել և վտանգազերծել իրեն և իր սոցիալիստական բարեկամներին հնարավոր ագրեսիայից, որտեղից էլ այն ելնի: Սովետական Միությանը խորապես խորթ է ուժի դիրքի քաղաքականությունը: Նա չի սպառնում իր մոտիկ կամ հեռավոր հարևաններից ոչ մեկին՝ ձգտում է զարգացնել բարիդրացիական հարաբերություններ պետությունների միջև:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդգծում են լարվածության թուլացման պրոցեսի խորացման համար պայքարն ուժեղացնելու անհրաժեշտությունը: Արդի պայմաններում չկա աշխարհում յուրաքանչյուր մարդու ճակատագիրը շոշափող առավել կարևոր խնդիր, քան ռեալ զինաթափման հասնելը: Այդ նպատակի ճանապարհին խոշոր քայլ կարող է դառնալ ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման վերաբերյալ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև երկարաժամկետ համաձայնագրի կնքումը՝ կողմերի հավասարության և միատեսակ անվտանգության սկզբունքի հիման վրա: Դա բաց կաներ հետագայում դեպի ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման և կրճատման է՛լ ավելի հեռուն գնացող քայլերի անցնելու հեռանկար: ՍՍՀՄ-ը հավատում է իր առաջարկությունը նեյտրոնային զենքի արտադրությունից փոխադարձաբար հրաժարվելու մասին, որը մարդկությանը կփրկեր սպառազինությունների մրցավազքի նոր տուրի մեջ ներքաշվելուց:

Սովետական Միությունը, սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների հետ սերտ համագործակցությամբ, հաստատակամորեն կձգտի առաջադիմության հասնել զինաթափման նաև մյուս հարցերում, որոնց շուրջն այժմ բանակցություններ են վարվում, կձգտի հասնել ամբողջ միջազգային մթնոլորտի արմատական առողջացման:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը վստահություն են հայտնում, որ սովետական մարդիկ է՛լ ավելի մեծ եռանդով կաշխատեն ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման համար, կամրապնդեն մեր հայրենիքի հզորությունը, ակտիվորեն կնպաստեն կուսակցության և սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականության նպատակների հաջող իրագործմանը:

---

2. «Լենինյան ուղիով», № 5

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Ապրիլի 12-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը լսեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար, Հայկական ՍՍՀ սահմանադրական հանձնաժողովի նախագահ ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը «Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության Սահմանադրության (Հիմնական օրենքի) նախագծի և նրա համաժողովրդական քննարկման արդյունքների մասին»:

Պլենումը հիմնականում հավանություն տվեց սահմանադրական հանձնաժողովի ներկայացրած՝ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության Սահմանադրության (Հիմնական օրենքի) նախագծին՝ համաժողովրդական քննարկման արդյունքների հիման վրա նրա մեջ մտցված լրացումներով, ճշգրտումներով և ուղղումներով հանդերձ և որոշեց Սահմանադրության նախագիծը դնել Հայկական ՍՍՀ իններորդ գումարման Գերագույն սովետի արտահերթ՝ յոթերորդ նստաշրջանի քննարկմանը:

Պլենումը հանձնարարեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար, սահմանադրական հանձնաժողովի նախագահ ընկ. Կ. Ս. Դեմիրճյանին Սահմանադրության նախագծի և նրա համաժողովրդական քննարկման արդյունքների մասին զեկուցումով հանդես գալ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նստաշրջանում:

Պլենումը կուսակցական և սովետական մարմիններին, մինիստրություններին և գերատեսչություններին, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպություններին պարտավորեցրեց քննության առնել պետական, տնտեսական և կուլտուրական շինարարության կոնկրետ տեղամասերում աշխատանքի բարելավման վերաբերյալ Հայկական ՍՍՀ Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկման ընթացքում աշխատավորներից ստացված բոլոր առաջարկություններն ու դիտողությունները և անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել դրանց գործնական իրականացման համար:

Պլենումը լսեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար ընկ. Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆԻ հաղորդումը «Հայկական ՍՍՀ պետական հիմնի մասին»: Պլենումը հավանություն տվեց Հայկական ՍՍՀ պետական հիմնի տեքստին և այդ հարցը հանձնեց Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության քննարկմանը:

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը ավարտեց իր աշխատանքը:

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ (ՀԻՄՆԱԿԱՆ ՕՐԵՆՔԻ) ՆԱԽԱԳԾԻ ԵՎ ՆՐԱ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՔՆՆԱՐԿՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար, Հայկական ՍՍՀ սահմանադրական հանձնաժողովի նախագահ ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցումը Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նստաշրջանում, 1978 թ. ապրիլի 13-ին

*Հարգելի ընկեր դեպուտատնե՛ր:*

*Հանրապետության աշխատավորները մեծ ոգևորությամբ ու շահագրգռությամբ ընդունեցին Սովետական Հայաստանի նոր Սահմանադրության նախագիծը: Քաղաքական և աշխատանքային բարձր ակտիվության պայմաններում անցավ նախագծի համաժողովրդական քննարկումը: Եվ այսօր, երբ ետևում են մնացել դրա համաժողովրդական քննարկման օրերը, և նախագիծը դրված է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի արտահերթ նստաշրջանի քննարկմանն ու հաստատմանը, նրանց մտքերն ու հայացքները սևեռված են այս դահլիճին, այս նստաշրջանի աշխատանքին: Ներկա նստաշրջանի նկատմամբ այդպիսի հետաքրքրությունը միանգամայն հասկանալի է. չէ՞ որ այն պետք է կատարի արտակարգ կարևորության պատմական ակտ՝ ընդունի և հռչակի Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության նոր Սահմանադրությունը:*

*Բնականաբար, մեզ բոլորիս՝ այդ նշանավոր իրադարձության անմիջական մասնակիցներիս, այժմ համակել է մեծ, բերկրալի հուզմունքի զգացումը: Մեզ՝ ժողովրդի ընտրյալներիս, երջանիկ առաքելություն, պատվավոր պարտականություն և մեծ պատիվ է վիճակվել՝ հաստատելու հանրապետության նոր Հիմնական օրենքը, դրանով իսկ վավերագրելու այն, ինչի որ հայ ժողովուրդը, Սովետական Հայաստանի աշխատավորները, լենինյան կոմունիստական կուսակցության առաջնորդությամբ, սովետական իշխանության տարիներին հասել են սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում, մեր պայծառ իդեալների հաղթանակի համար մղվող պայքարում:*

*Մենք հանրապետության նոր Սահմանադրությունն ընդունում ենք ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից սովետական պետության նոր Հիմնական օրենքի հաստատումից ընդամենը մի քանի ամիս անց, այն օրենքի, որում ժողովրդի և կուսակցության կամքով վավերագրված են կոմունիզմի բարձունքները տանող հաղթական առաջընթացում սովետների երկրի ձեռք բերած համաշխարհային պատմական հաղթանակները, մեր հայրենիքի նվաճած պատմական բնագիծը՝ աշխարհում առաջին համաժողովրդական պետության, զարգացած սոցիալիզմի հասարակարգի կառուցումը:*

ՍՍՀՄ նոր Հիմնական օրենքը աշխատավորական ամենալայն զանգվածների ստեղծագործության արդյունքն է։ Այն մարմնավորում է նրանց փորձը, գիտելիքներն ու կամքը, հոգատարությունը սոցիալիստական հայրենիքի ծաղկման, նրա միջազգային հեղինակության բարձրացման նկատմամբ։

Նոր Սահմանադրության ստեղծումը սովետական մարդիկ իրավացիորեն համարում են մեր կուսակցության, նրա լենինյան շտաբի՝ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, նրա քաղբյուրոյի կոլեկտիվ մտքի և իմաստության արգասիքը, այն իրավամբ կապում են Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի անվան հետ, երախտագիտության խոր զգացում են տածում նրա նկատմամբ՝ արդիականության այդ կարևորագույն փաստաթղթի, զարգացած սոցիալիզմի հասարակության խարտիայի մշակման գործում նրա անձնական մեծ ավանդի համար։

Կանցնեն տարիներ, տասնամյակներ, բայց զարգացած սոցիալիզմի հասարակարգի նոր Հիմնական օրենքի հռչակման օրը ժողովրդի հիշողության մեջ կմնա որպես ժողովրդապետության լենինյան սկզբունքների իսկական հաղթանակի վկայություն։

## I

Ընկերնե՛ր։ ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունումը կարևոր ուղենիշ եղավ մեր երկրի քաղաքական պատմության մեջ, այն դարձավ մեր ժամանակի դարակազմիկ փաստաթուղթ, որը լիովին արտահայտում է «Ամեն ինչ հանուն մարդու, մարդու բարօրության համար» ՍՄԿԿ-ի ծրագրային լոզունգը, սովետական ժողովրդի նվիրական երազանքներն ու իղձերը։

ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը վառ կերպով վկայում է, որ Հոկտեմբերյան հեղափոխության հռչակած իդեալները, լենինյան պատգամները հաջողությամբ կենսագործվում են։

Վեց տասնամյակներում սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքի կարևորագույն արդյունքը ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիզմի հասարակարգի կառուցումն է, որն արդի սոցիալական առաջընթացի բարձրագույն նվաճումն է։

Սոցիալ-տնտեսական, քաղաքական և հոգևոր զարգացման ոլորտում մեր հայրենիքը հասել է ժամանակակից առաջադիմության բարձունքներին։ Անճանաչելիորեն փոխվել է երկրի էկոնոմիկան։ Ստեղծվել է միասնական ու հզոր ժողովրդատնտեսական կոմպլեքս։ Զարգանալով սոցիալիստական հասարակարգի առավելությունների հետ գիտատեխնիկական հեղափոխության զուգակցման հիման վրա, այն հնարավորություն է ընձեռում հաջողությամբ լուծելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման կարևորագույն խնդիրը։

Խոր տեղաշարժեր են կատարվել նաև սովետական հասարակության սոցիալական կերպարում։ Քանակապես աճել և որակապես փոխվել է սովետական բանվոր դասակարգը։ Զգալիորեն հարստացել է բանվոր դասակարգի քաղաքական փորձը, բարձրացել է նրա կոմունիստական գիտակցականության մակարդակը։ Փոխվել են կոլտնտեսային գյուղացիության աշխատանքի բնույթը, սոցիալական կերպարն ու կուլտուրան, որ նրան զգալիորեն մերձեցրել են բանվոր դասակարգին։ Բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության հետ սերտ միասնությամբ ապրում և աշխատում է մեր մտավորականությունը, որը դարձել է իսկապես ժողովրդական, սոցիալիստական։

Սովետական հասարակության տնտեսական զարգացումը անշեղորեն ուղեկցվել է կուլտուրայի ծաղկմամբ, մարդկանց հոգևոր աճով, սոցիալիստական գիտակցության ձևավորմամբ, նրանց կենսամակարդակի բարձրացմամբ։ Է՛լ ավելի սերտացել են ազգամիջյան հարաբերությունները, ամրապնդվել է ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների բարեկամությունը, որ ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի ամենահամոզիչ ապացույցն է։ Այդ բոլոր փոփոխությունների ընդհանուր արդյունքը սովետական հասարակության սոցիալական հարաճուն միատարրությունն է։

Սովետական Միության նոր Սահմանադրության պատմական նշանակությունն էլ հենց նա է, որ այն, օրենսդրականորեն վավերագրելով զարգացած



սոցիալիզմի կառուցման փաստը, արտացոլելով սովետական երկրի զարգացման արդյունքները, նախորդ Սահմանադրության ընդունումից հետո հասարակական կյանքի բոլոր ոլորտներում տեղի ունեցած սկզբունքային խոշոր փոփոխությունները, սոցիալիստական համաժողովրդական պետության կազմավորման սկզբունքներն ու նպատակները, նրա մարմինների խնդիրները, կառուցվածքը, ֆունկցիաները, գործունեության կարգը համապատասխանեցրել է հասարակության զարգացման ձեռք բերված փուլին։

Զարգացած սոցիալիզմի հոյակապ նվաճումները, որոնք անհրաժեշտ դարձրին ՍՍՀՄ նոր Սահմանադրության ստեղծումը, սովետական մարդիկ իրավամբ կապում են Լենինի մեծ կուսակցության հետ։ Նրանք խոր գոհունակությամբ ընդունեցին սահմանադրական այն նոր դրույթը, որն օրենսդրականորեն վավերագրում է ՍՄԿԿ-ի առաջատար դերը սովետական պետության քաղաքական սիստեմում։

Սովետական հասարակության համար նոր Սահմանադրությունը դարձել է սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման և խորացման կարևոր միջոց, կոմունիզմի կառուցման զորեղ գործիք։

## II

Ընկերնե՛ր։ Այն բոլոր խոշոր պատմական փոփոխություններն ու նվաճումները, որոնք բնորոշ են ամբողջ սովետական երկրին, բնականաբար, հատուկ են նաև սովետական սոցիալիստական հանրապետությունների հզոր ու անխախտ միությունը կազմող բոլոր միութենական հանրապետություններին։ Այստեղից էլ ծագում է նաև միութենական հանրապետությունների նոր սահմանադրությունների ընդունման օբյեկտիվ անհրաժեշտությունը։

Սովետական Հայաստանի նոր Սահմանադրության մշակման համար, ինչպես գիտեք, անցյալ տարվա հուլիսին Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը ստեղծեց սահմանադրական հանձնաժողով, որի կազմում էին փորձառու կուսակցական ու պետական աշխատողներ, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության ներկայացուցիչներ։

Նախագիծը մշակելիս սահմանադրական հանձնաժողովն առաջնորդվել է կոմունիստական կուսակցության ծրագրով ու նրա համագումարների որոշումներով, ՍՍՀՄ նոր Սահմանադրության սկզբունքներով և նորմերով, ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թ. մայիսյան պլենումում, ՍՍՀՄ Գերագույն սովետի յոթերորդ արտահերթ նստաշրջանում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումներում ու նրա «Պատմական բնագիծ կոմունիզմի ճանապարհին» խորագրով հոդվածում արծարծված տեսական ու գործնական դրույթներով և ընդհանրացումներով, ինչպես նաև նկատի է ունեցել մեր հանրապետության առանձնահատկությունները։ Սահմանադրության նախագծի մշակման գործում ակտիվորեն ներգրավվել են ականավոր գիտնականներ, իրավաբաններ, պատմաբաններ, տնտեսագետներ, սոցիոլոգներ, փիլիսոփաներ, պետական մարմինների և հասարակական կազմակերպությունների աշխատողներ։ Նախագիծը համակողմանի քննարկվել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումում։

Ձեր քննարկմանը դրված՝ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության Սահմանադրության նախագիծը առավելագույնս համապատասխանում է հանրապետության զարգացման արդի փուլին, հասուն սոցիալիստական հասարակարգի պահանջներին, տնտեսական, սոցիալական, քաղաքական, կուլտուրական առաջընթացի բարձունքներին, որոնց հասել է հայ ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, Սովետական Միության ժողովուրդների ինտերնացիոնալ միասնական ընտանիքում։

Սովետական իշխանության առաջին քայլերից մինչև զարգացած սոցիալիզմի հասարակարգի կառուցումը հայ ժողովրդի անցած գրեթե վաթսունամյա ուղին, որը եղավ պայքարի ու կառուցման, հասարակական առաջընթացի և սոցիալիստական արմատական վերափոխությունների սխրանքներով լի ուղի, նշանավորված է հանրապետության սոցիալիստական պետականության հաստատման ու զարգացման փառավոր փուլերով։ Եթե 1922 թվականին ընդուն-

ված՝ Սովետական Հայաստանի առաջին Սահմանադրությունը վավերացրեց նոր հասարակական ու պետական կարգի սկզբունքները, ապա 1937 թվականին հռչակված երկրորդ Սահմանադրությունը հանրագումարի բերեց տնտեսական, սոցիալական և քաղաքական կյանքում հանրապետության աշխատավորների ձեռք բերած նվաճումները, սոցիալիզմի հիմքերի ստեղծման ավարտումը:

Երկրորդ Սահմանադրության ընդունումից հետո անցած չորս տասնամյակները Սովետական Հայաստանի համար դարձան սոցիալ-տնտեսական և հոգևոր կյանքի բոլոր բնագավառներում բուռն առաջընթացի տասնամյակներ: Հանրապետությունը բառիս բուն իմաստով դարձավ ծաղկուն երկրամաս՝ բարձր զարգացած ինդուստրիայով, խոշոր մեքենայացված գյուղատնտեսությամբ և առաջավոր կուլտուրայով:

Այդ ժամանակամիջոցում հանրապետությունում արդյունաբերական արտադրանքի թողարկումն աճեց ավելի քան 60 անգամ, իսկ հանրային համախառն արդյունքում դրա բաժինը այժմ կազմում է մոտ 70 տոկոս: Հայաստանը, ուր հեղափոխությունից առաջ ներմուծվում էր նույնիսկ աղը, այժմ ընդհանուր միութենական արտահանության կազմում աշխարհի տասնյակ երկրներ է առաքում հարյուրավոր արտադրատեսակներ, ժամանակակից ամենաբարդ մեքենաներ ու հաստոցներ:

Հանրապետության դինամիկ զարգացող արդյունաբերությունը այժմ բնորոշվում է այնպիսի առաջատար ճյուղերով, ինչպիսիք են՝ էներգետիկան, քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, ռադիոտեխնիկան, էլեկտրատեխնիկան, էլեկտրոնիկան, հաստոցաշինությունը, մետաղամշակությունը, սարքաշինությունը, հաշվիչ մեքենաների, շինանյութերի արտադրությունը, թեթև և սննդի արդյունաբերության այլազան ճյուղերը և այլն: Միայն վերջին տասը տարում շահագործման են հանձնվել այնքան հիմնական արտադրական ֆոնդեր, որքան ստեղծվել էին նախորդ բոլոր տարիներին: Արդյունաբերական արտադրության աճի տեմպերով Սովետական Հայաստանը երկրում գրավում է առաջատար տեղերից մեկը:

Ներկայումս հանրապետության արդյունաբերությունը բնութագրվում է արտադրության կազմակերպման, տեխնոլոգիայի և կուլտուրայի բարձր մակարդակով, հագեցած է նորագույն տեխնիկայով, բարդ հաստոցներով ու տեխնոլոգիական սարքավորումներով: Արմատապես բարելավվել են աշխատանքի պայմանները, բարձրացել է նրա մեքենա-էներգազինվածությունը:

Հանրապետության բանվոր դասակարգն այսօր բաղկացած է քաղաքականապես հասուն, կրթված, տեխնիկապես գրագետ, բարձր որակավորված, հասարակականորեն ակտիվ հարյուր հազարավոր մարդկանցից, որոնց աշխատանքը հարընթաց մերձենում է ինժեներատեխնիկական անձնակազմի աշխատանքին:

Բարձր մեքենայացված և բարձր ապրանքային է դարձել հանրապետության գյուղատնտեսությունը: Գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1976 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, աճեց ավելի քան չորս անգամ: 1937 թվականին հանրապետության գյուղատնտեսության մեջ կար 1.199 տրակտոր, մինչ 1976 թվականին՝ 11.996: Ոռոգելի հողերի տարածությունը կազմել է 1937 թվականին՝ 160,6 հազար հեկտար, իսկ 1976 թվականին՝ 273,3 հազար հեկտար: Հանրապետության գյուղատնտեսությունը զարգանում է արտադրության ինտենսիվացման, մասնագիտացման և կոոպերացման ուղիով, հետևողականորեն փոխադրվելով ինդուստրիալ հիմքերի վրա: Անշեղորեն աճում է գյուղատնտեսական արտադրության էներգազինվածությունը: Փոխվել է նաև գյուղի սոցիալական պատկերը: Ժամանակակից գյուղական աշխատավորի հոգեբանությունը ձևավորվել է սոցիալիստական հիմքի վրա: Սովխոզի բանվորը, թե կոլտնտեսականն այսօր տիրապետում է բարդ տեխնիկան: Նրա կենցաղը քիչ է տարբերվում քաղաքաբնակ աշխատավորի կենցաղից:

Մշտապես ընդլայնվում է պետության կառավարման գործերին բանվորների և կոլտնտեսականների մասնակցությունը: Բոլոր աստիճանների տեղա-



կան սովետների դեպուտատների ընդհանուր կազմում նրանց թիվը 69,2 տոկոս է, իսկ ՀՍՍՀ Գերագույն սովետի կազմում՝ 51 տոկոս:

Մեծապես զարգացել են ժողովրդական կրթությունը, գիտությունը և կուլտուրան: 1977 թվականին հանրապետությունում ուսուցման տարբեր տեսակներում ընդգրկված էր ավելի քան 1.115 հազար մարդ, որոնցից հանրակրթական դպրոցներում սովորում էր 631 հազար մարդ, միջնակարգ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում՝ 21,5 հազար, տեխնիկումներում և մյուս միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ 54,8 հազար, բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ 56,4 հազար: Համեմատության համար ասենք, որ 1937 թվականին հանրապետությունում բոլոր սովորողների թիվը կազմել է մոտ 273 հազար: Ուսուցիչների թիվը այն ժամանակ եղել է ընդամենը 8 հազար, իսկ այժմ՝ ավելի քան 43,3 հազար:

Հանրապետությունն ունի նշանակալից մտավոր պոտենցիալ: Հազար բնակչին ընկնող բարձրագույն և միջնակարգ կրթությամբ անձանց թվով Հայկական ՍՍՀ-ն Միության մեջ գրավում է առաջին տեղերից մեկը: Հանրապետության 13 բուհերում կադրեր են պատրաստվում փաստորեն բոլոր ժամանակակից կարևորագույն մասնագիտությունների գծով: Հանրապետությունում կան հարյուրից ավելի գիտահետազոտական ինստիտուտներ, որոնցում աշխատում է գիտնականների բազմահազարանոց ջոկատ:

Հանրապետությունը հսկայական հաջողություններ է ձեռք բերել սոցիալական զարգացման, աշխատավորների կուլտուրական մակարդակի և նյութական բարեկեցության բարձրացման բնագավառում: Եթե 1946 թվականին շահագործման է հանձնվել ընդամենը 36 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, ապա 1977 թվականին ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին կառուցվել է 1.205 հազար քառակուսի մետր ընդհանուր բնակտարածություն:

Սպառման հանրային ֆոնդերից բնակչության ստացած վճարումներն ու արտոնությունները 1977 թվականին կազմել են 912,4 միլիոն ռուբլի, իսկ բնակչության մեկ շնչին ընկել է 312 ռուբլի՝ 1960 թվականի 107 ռուբլու դիմաց:

Կառուցվել են բազմաթիվ առողջարաններ, հիվանդանոցներ, կուլտուրայի և կրթական օջախներ, ֆիզկուլտուրայի և սպորտի, կենցաղսպասարկման ու առևտրի օբյեկտներ և այլն:

1937 թվականին հանրապետությունում աշխատում էր 771 բժիշկ, իսկ այժմ բոլոր մասնագիտությունների բժիշկների թիվը կազմում է 10,5 հազար: Եթե 1937 թվականին Հայկական ՍՍՀ-ում գործում էր ընդամենը 530 մասսայական գրադարան՝ 394,3 հազար օրինակ գրքային ֆոնդով, ապա ներկայումս հանրապետության քաղաքների և գյուղերի բնակչությանը սպասարկում է 1.321 մասսայական գրադարան՝ ավելի քան 12 միլիոն օրինակ գրքային ֆոնդով:

Նյութական և կուլտուրական նման մասշտաբի առաջընթացը հանգեցրել է կյանքի և աշխատանքի պայմանների մերձեցման քաղաքում և գյուղում, ֆիզիկական և մտավոր աշխատանքի ոլորտում:

Արդեն սոցիալիզմի օրոք աճել և դաստիարակվել են սովետական մարդկանց նոր սերունդներ, ձևավորվել է նրանց սոցիալիստական գիտակցությունը: Հասարակական հարաբերությունները դրսևորվում են սոցիալիզմին ներհատուկ կոլեկտիվիստական սկզբունքների հիման վրա:

Զոդվել է մեր հանրապետության աշխատավորության բարոյաքաղաքական միասնությունը, առավել ամրապնդվել է հայ ժողովրդի բարեկամությունը ՍՍՀՄ եղբայրական բոլոր ժողովուրդների հետ, է՛լ ավելի է սերտացել մեր հանրապետության աշխատավորության համախմբվածությունը Սովետական Միության կոմունիստական կուսակցության շուրջը:

Ընդհանուր գծերով սրանք են հանրապետությունում վերջին տասնամյակների ընթացքում տեղի ունեցած այն խոշոր փոփոխությունները, որոնք անհրաժեշտ են դարձրել նոր Սահմանադրության ստեղծումն ու ընդունումը:

Հայկական ՍՍՀ Սահմանադրության նախագիծը լիովին արտացոլում է հասարակության նյութական բազայի, արտադրաուժերի և սոցիալական հարա-

*բերությունների զարգացման ոլորտում, սովետական սոցիալիստական պետականության ամրապնդման բնագավառում եղած փոփոխությունները, մեր հասարակության սոցիալական կառուցվածքում, նրա նյութական ու հոգևոր կյանքի փաստորեն բոլոր մարզերում կատարված փոփոխությունները։ Սահմանադրությունը, վավերացնելով այդ պատմական վերափոխությունները, հանրապետության օրենսդրական կառուցվածքը համապատասխանեցնում է սովետական հասարակարգի հիմքերի բոլոր բաղադրիչների նոր մակարդակին և հարաբերակցությանը։*

## III

*Ընկերնե՛ր։ Հանրապետության Սահմանադրության նախագիծը, ինչպես տավեց, հենվում է այնպիսի ամուր հիմքի վրա, ինչպիսին է ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը։ Նրա հարուստ, բազմազան սոցիալ-իրավական, քաղաքական, գաղափարական և գիտական բովանդակությունը Հայկական ՍՍՀ-ի սահմանադրական օրենսդրության կարևորագույն աղբյուրն է։ Սահմանադրության նախագիծը մշակելիս մենք առաջնորդվել ենք նաև հաջորդայնության սկզբունքով։ Դրանում պահպանվել և զարգացվել են Հայկական ՍՍՀ գործող Սահմանադրության շատ դրույթներ։*

*Հայկական ՍՍՀ Սահմանադրության նախագծի համար իրավական հիմք է ծառայել նաև մեր հանրապետության օրենսդրությունը։ Վերջին տարիներին մեզանում շատ բան է արվել օրենսդրության կատարելագործման և զարգացման բնագավառում։ Ընդունվեցին օրենքներ տեղական սովետների մասին, առողջապահության մասին, ժողովրդական կրթության մասին, պատմության ու կուլտուրայի հուշարձանների պահպանության և օգտագործման մասին, Հայկական ՍՍՀ ամուսնության և ընտանիքի օրենսգիրքը, հողային օրենսգիրքը, ջրային օրենսգիրքը, ընդերքի մասին օրենսգիրքը, աշխատանքային օրենսգիրքը և այլն։ Այդ բոլոր կարևորագույն օրենսդրական ակտերի պահանջներն արտացոլվել են նախագծում։*

*Հայկական ՍՍՀ Սահմանադրության նախագիծն ունի գործնական և տեսական ամուր հիմք։ Այդ է մեր Հիմնական օրենքի կենսականության և արդյունավետության գրավականը։*

*Կոմունիստական շինարարության արդի խնդիրները, զարգացած սոցիալիզմի պայմաններում հասարակական և պետական կարգի կազմակերպման առավել բարձր մակարդակը, հանրապետության նոր Սահմանադրության նախագծի՝ ՍՍՀՄ Սահմանադրությունից բխող քաղաքական և տեսական ամրակուռ հիմքը իրենց կնիքն են դրել դրա բովանդակության, կառուցվածքի և ծավալի վրա։ Նախագիծն ունի տասը բաժին, 19 գլուխ, 171 հոդված։ Մինչդեռ Հայկական ՍՍՀ գործող Սահմանադրությունն ունի 11 գլուխ և 123 հոդված։ Նոր բաժինները, գլուխները և հոդվածները հնարավորություն են ընձեռում ավելի լրիվ ու հստակ արձանագրելու հանրապետության հասարակական ու պետական կառուցվածքի, քաղաքացիների սահմանադրական ստատուսի, պետական մարմինների կազմակերպման ու գործունեության սկզբունքների հիմնական եզրաչափերը, ավելի լիովին բացահայտելու մեր հասարակության զարգացման արդի փուլի հատկանիշները։*

*Սահմանադրության նախագիծն սկսվում է հակիրճ ներածականով, որտեղ ամփոփված են ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում Սովետական Հայաստանի անցած ուղու գլխավոր արդյունքները, արձանագրված է զարգացած սոցիալիստական հասարակության կառուցման փաստը։ Ներածականում ասված է. «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որ կատարեցին Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները՝ Վ. Ի. Լենինի գլխավորած կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հայ ժողովրդի համար, ինչպես և երկրի մյուս ժողովուրդների համար, նշանավորեց պատմական շրջադարձ, որից սկսվեցին նրա նոր պատմությունը, սոցիալական և ազգային վերածնունդը, նրա սոցիալիստական պետականության հաստատումը»։*

*Նախագիծը բովանդակում է սովետական հասարակության մեջ կոմունիս-*



*տական կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերի ծավալուն բնութագիրը։*

*Մեր հանրապետության աշխատավորները, ինչպես և սովետական բոլոր մարդիկ, պատմական փորձով են համոզվել, որ կոմունիստական կուսակցությունը գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին։ Նրանք անսահմանորեն վստահում են կուսակցությանը, միահամուռ պաշտպանում և ջերմորեն հավանություն են տալիս նրա ներքին և արտաքին քաղաքականությանը. նախագծի 6-րդ հոդվածում, ինչպես ՍՍՀՄ Սահմանադրության մեջ, ասվում է, որ ՍՄԿԿ-ն սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժն է, նրա քաղաքական սիստեմի, բոլոր պետական և հասարակական կազմակերպությունների միջուկը։*

*Հայկական ՍՍՀ Հիմնական օրենքի նախագիծը, ինչպես և ՍՍՀՄ Սահմանադրությունը, արտացոլում է հանրապետության հասարակարգի և քաղաքականության, քաղաքական և տնտեսական սիստեմի սկզբունքները, որոնցում առավել լրիվ են մարմնավորվում մեր հասարակարգի և պետության սոցիալիստական բնույթը, մեր երկրում սոցիալիզմի զարգացման արդի փուլի առանձնահատկությունները։*

*Նախագծում մանրամասնորեն վավերագրվում են Հայկական ՍՍՀ քաղաքական սիստեմի էությունը, կառուցվածքը և դրա զարգացման ուղիները։*

*Հայկական ՍՍՀ Սահմանադրության նախագծում լիովին դրսևորված է մեր հասարակության՝ որպես աշխատավորների հասարակության և աշխատավորների համար հասարակության, էությունը։ Այս հիմնարար սկզբունքով է տոգորված հանրապետության Հիմնական օրենքի նախագծի ամբողջ բովանդակությունը, որի առաջին իսկ հոդվածում ասված է. «Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը համաժողովրդական սոցիալիստական պետություն է, որն արտահայտում է հանրապետության բանվորների, գյուղացիների և մտավորականության, բոլոր ազգությունների աշխատավորների կամքն ու շահերը»։ Իսկ նախագծի 2-րդ հոդվածն ազդարարում է. «Հայկական ՍՍՀ-ում ամբողջ իշխանությունը պատկանում է ժողովրդին։*

*Ժողովուրդը պետական իշխանությունն իրականացնում է ժողովրդական դեպուտատների սովետների միջոցով, որոնք Հայկական ՍՍՀ քաղաքական հիմքն են կազմում։ Մյուս բոլոր պետական մարմինները ենթակա են ժողովրդական դեպուտատների սովետների վերահսկողությանը և հաշվետու են նրանց»։*

*Սահմանադրության նախագծում մեր սովետները վերանվանված են (ինչպես դա արդեն արված է միութենական Սահմանադրության մեջ) ժողովրդական դեպուտատների սովետներ։ Հայկական ՍՍՀ պետական իշխանության ներկայացուցչական մարմինների նոր անվանումը շեշտում է, որ զարգացած սոցիալիստական հասարակարգում սովետների սոցիալական բազան ամբողջ ժողովուրդն է, որի կամքն արտահայտում և կենսագործում են իշխանության մարմինները և ժողովրդական դեպուտատները։ Սահմանադրության նախագիծը զարգացնում է սովետների կազմակերպման և գործունեության դեմոկրատական սկզբունքները, նախատեսում է մասսաների հետ նրանց կապերի հետագա ամրապնդումը։*

*Նախագծում հատուկ հոդված է նվիրված արհեստակցական միություններին, Համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միությանը, կոոպերատիվ և հասարակական մյուս կազմակերպություններին, որտեղ վավերագրված է նրանց մասնակցության իրավունքը պետական և հասարակական գործերի կառավարմանը, քաղաքական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական հարցերի լուծմանը՝ իրենց կանոնադրական խնդիրներին համապատասխան։*

*Սահմանադրությունը վավերագրում է աշխատավորական կոլեկտիվի տեղը՝ որպես մեր հասարակության սոցիալական օրգանիզմի սկզբնական բջջի։ Դա վառ կերպով վկայում է, թե մեր պետության մեջ որքան է աճել աշխատավոր մարդու դերը՝ որպես բոլոր նյութական և հոգևոր արժեքները կերտողի։*

Նշելով այդ փաստը, ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասել է. «Աշխատավորական կոլեկտիվում, նրա կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում արտացոլվում է հասարակության ամբողջ կյանքը՝ թե՛ տնտեսական, թե՛ քաղաքական, թե՛ հոգևոր» և «...մեր սոցիալական օրգանիզմի այդ սկզբնական բջջում ծնվում և զարգանում են ամբողջ երկրի կյանքի վրա ներազդող նախաձեռնությունները»։

Հայկական ՍՍՀ Սահմանադրության նախագծի 8-րդ հոդվածը սահմանում է, որ աշխատավորական կոլեկտիվները մասնակցում են պետական ու հասարակական գործերի քննարկմանն ու լուծմանը, արտադրության և սոցիալական զարգացման պլանավորմանը, կադրերի պատրաստմանն ու տեղաբաշխմանը, ձեռնարկությունների ու հիմնարկությունների կառավարման, աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավման, արտադրության զարգացման, ինչպես նաև սոցիալ-կուլտուրական միջոցառումների և նյութական խրախուսման համար նախատեսված միջոցների օգտագործման հարցերի քննարկմանն ու լուծմանը։ Աշխատավորական կոլեկտիվները զարգացնում են սոցիալիստական մրցությունը, նպաստում աշխատանքի առաջավոր մեթոդների տարածմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, իրենց անդամներին դաստիարակում են կոմունիստական բարոյականության ոգով, հոգ են տանում նրանց քաղաքական գիտակցականության, կուլտուրայի և պրոֆեսիոնալ որակավորման բարձրացման մասին։ Սահմանադրական այդ դրույթը միտում է Վ. Ի. Լենինի այն ցուցումի իրագործումը, որ «երբ ԲՈԼՈՐԸ կսովորեն կառավարել և, իսկապես, կսկսեն ինքնուրույնաբար կառավարել հասարակական արտադրությունը... այն ժամանակ լայնորեն կբացվի դուռը կոմունիստական հասարակության առաջին փուլից նրա բարձրագույն փուլին անցնելու համար...» (Երկեր, հ. 25, էջ 618—619)։

Այս դրույթները՝ ՍՄԿԿ ղեկավար և ուղղություն տվող դերի, պետության կազմակերպման և գործունեության սկզբունքների, մասսայական-հասարակական կազմակերպությունների ֆունկցիաների վավերագրման հետ մեկտեղ, կազմում են մեր երկրի զարգացած սոցիալիստական հասարակարգի քաղաքական սիստեմի հիմնարար սկզբունքները։

Սահմանադրության նախագծում Հայկական ՍՍՀ քաղաքական սիստեմի բնութագրումը ավարտվում է այն հանգամանքի նշումով, որ դրա զարգացման հիմնական ուղղությունը սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալումն է։ Նախագիծը սահմանում է այդ պրոցեսի զարգացման ուղիները։

Նախագծում տրվում է Հայկական ՍՍՀ տնտեսական սիստեմի ծավալուն բնութագիրը։ Հայկական ՍՍՀ տնտեսական սիստեմի հիմքն է կազմում արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությունը՝ պետական (համաժողովրդական) և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության ձևով։ Ասված է և, որ սոցիալիստական սեփականություն է նաև արհմիութենական և այլ հասարակական կազմակերպությունների գույքը, որը նրանց անհրաժեշտ է կանոնադրական խնդիրների իրականացման համար։ Պետությունը պահպանում է սոցիալիստական սեփականությունը և պայմաններ է ստեղծում դրա բազմապատկման համար։ Սահմանադրության նախագծում արձանագրված է, որ ոչ ոք իրավունք չունի սոցիալիստական սեփականությունն օգտագործելու անձնական շահառության և այլ շահադիտական նպատակներով։ Նախագծում շեշտված է աշխատանքի դերը սոցիալիստական հասարակարգում, սահմանված է սոցիալիստական արտադրության նպատակը։ Ասված է, որ սոցիալիզմի օրոք հանրային արտադրության բարձրագույն նպատակը մարդկանց նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարումն է։

Նախագծում ասվում է, որ հանրային հարստության, ժողովրդի և սովետական յուրաքանչյուր մարդու բարեկեցության աճի աղբյուրը սովետական մարդկանց՝ շահագործումից զերծ աշխատանքն է։

Հանրօգուտ աշխատանքը և դրա արդյունքները որոշում են մարդու դիրքը հասարակության մեջ։ Պետությունը զուգակցելով նյութական և բարոյական խթանները, խրախուսելով նորարարությունը, աշխատանքի նկատմամբ ստեղ-



ծագործական վերաբերմունքը, նպաստում է, որ աշխատանքը դառնա սովետական յուրաքանչյուր մարդու կենսական պահանջը։

Նույն գլխում ասված է, որ Հայկական ՍՍՀ քաղաքացիների անձնական սեփականության հիմքը աշխատանքային եկամուտներն են։ Քաղաքացիների անձնական սեփականությունը պահպանվում է պետության կողմից։ Միաժամանակ անհրաժեշտ է շեշտել սահմանադրական այն դրույթը, ըստ որի «Քաղաքացիների անձնական սեփականությունը հանդիսացող կամ նրանց կողմից օգտագործվող գույքը չպետք է ծառայի անաշխատ եկամուտ ստանալու համար, չպետք է օգտագործվի ի վնաս հասարակության շահերի»։

Ինչպես վերը նշեցինք, մեր երկրում ստեղծվել է միասնական և հզոր ժողովրդատնտեսական կոմպլեքս։ Ելնելով այդ փաստից, Սահմանադրության նախագծում արձանագրված է, որ Հայկական ՍՍՀ էկոնոմիկան ՍՍՀՄ տերիտորիայում հանրային արտադրության, բաշխման և փոխանակության բոլոր օղակներն ընդգրկող միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի բաղկացուցիչ մասն է։

Նշված է, որ հանրապետության էկոնոմիկայի վարումը իրականացվում է ըստ տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանի, հաշվի առնելով ճյուղային և տերիտորիալ սկզբունքները, կենտրոնացված կառավարումը զուգակցելով ձեռնարկությունների, միավորումների և մյուս կազմակերպությունների տնտեսական ինքնուրույնության և նախաձեռնության հետ։ Ընդ որում, ակտիվորեն օգտագործվում են տնտեսական հաշվարկը, շահույթը, ինքնարժեքը, տնտեսական մյուս լծակներն ու խթանները։

Ժողովրդական տնտեսության զարգացման, քաղաքների և արդյունաբերական կենտրոնների աճի համեմատ տնտեսական շինարարությունն իրականացնելիս, հատկապես մեր հանրապետության համար, ավելի ու ավելի մեծ նշանակություն են ստանում բնության ռացիոնալ օգտագործումը, շրջակա բնական միջավայրի պահպանումը։ Այդ հարցն արտացոլվել է Սահմանադրության նախագծում։ «Ելնելով ներկա և ապագա սերունդների շահերից,— ասված է նախագծում,— Հայկական ՍՍՀ-ում անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկվում հողի և նրա ընդերքի, ջրային ռեսուրսների, բուսական ու կենդանական աշխարհի պահպանման և գիտականորեն հիմնավորված, ռացիոնալ օգտագործման համար, օդի և ջրի մաքրության պահպանման, բնական հարստությունների վերարտադրության ապահովման և մարդու շրջակա միջավայրի բարելավման համար»։

Հայկական ՍՍՀ բնության պահպանության նկատմամբ կուսակցության և պետության հոգատարության վառ դրսևորում եղան ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության կողմից վերջին տարիներին ընդունված որոշումները «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման միջոցառումների մասին», «Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը դադարեցնելու մասին», «Հայկական ՍՍՀ ոռոգելի հողագործության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին», ինչպես նաև ՍՄԿԿ Կենտկոմի հանձնարարությամբ այժմ մշակվող միջոցառումները Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանման և ռացիոնալ օգտագործման վերաբերյալ։ Այդ կենսական կարևորագույն որոշումներով մեծ հնարավորություններ են ստեղծվում և անհրաժեշտ միջոցներ են տրամադրվում բնության պահպանության բնագավառում թույլ տրված սխալները շտկելու և հանրապետությունում այդ գործը արմատապես բարելավելու համար։

Ընկերնե՛ր։ Նախագիծը, հանրապետության գործող Սահմանադրության համեմատությամբ, բովանդակում է նոր՝ «Սոցիալական զարգացումը և կուլտուրան» գլուխը։ Դա նույնպես արտացոլում է զարգացած սոցիալիզմի առանձնահատկությունները, որն ապահովում է հասարակության բազմակողմանի սոցիալական զարգացումը և կուլտուրական առաջընթացը, դա համաժողովրդական պետության մարդասիրական բնույթի առավել լիակատար դրսևորումն է։

Մեր հասարակության՝ որպես աշխատավորների հասարակության, բնույ-

թը մարմնավորված է նրա սոցիալական հիմքում: «Հայկական ՍՍՀ սոցիալական հիմքն է կազմում բանվորների, գյուղացիների և մտավորականության անխախտ դաշինքը»,— ասված է Սահմանադրության նախագծի 19-րդ հոդվածում:

Սովետական պետությունը նպաստում է հասարակության սոցիալական միատարրության խորացմանը, քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունների վերացմանը, ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների հետագա զարգացմանն ու մերձեցմանը, այսինքն՝ բարենպաստ սոցիալական և կուլտուրական նախադրյալներ է ստեղծում կուսակցության ծրագրային նպատակների իրականացման, կոմունիստական հասարակական հարաբերությունների հաստատման և նոր մարդու ձևավորման համար:

«Յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է» կոմունիստական իդեալին համապատասխան, պետությունն իրեն նպատակ է դնում ընդլայնել քաղաքացիների ստեղծագործական ուժերի, ընդունակությունների ու ձիրքերի գործադրման, անհատի համակողմանի զարգացման ռեալ հնարավորությունները:

Պետությունը հոգում է աշխատանքի պայմանների բարելավման ու պաշտպանության, նրա գիտական կազմակերպման, ֆիզիկական ծանր աշխատանքի կրճատման, իսկ հետագայում նաև իսպառ վերացման վերաբերյալ, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման հիման վրա:

Սահմանադրության նախագծում արձանագրված է, որ պետությունն իրականացնում է աշխատավորների ռեալ եկամուտների բարձրացման կուրս, հոգ է տանում առողջապահության, սոցիալական ապահովության, առևտրի ու հասարակական սննդի, կենցաղային սպասարկման և կոմունալ տնտեսության սիստեմների զարգացման վերաբերյալ: Պետությունն ապահովում է ժողովրդական կրթության միասնական սիստեմի, գիտության պլանաչափ զարգացումը, հոգում աշխատավորների և երիտասարդների կոմունիստական դաստիարակության, նրանց հոգևոր ու ֆիզիկական զարգացման համար:

Նախագծում ասված է, որ պետությունը հոգ է տանում հոգևոր արժույթները պահպանելու, բազմապատկելու և դրանք սովետական մարդկանց բարոյական ու գեղագիտական դաստիարակության, նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման համար լայնորեն օգտագործելու մասին:

Հայկական ՍՍՀ Սահմանադրության նախագծում առանձին գլուխ է նվիրված արտաքին քաղաքական գործունեությանը և սոցիալիստական հայրենիքի պաշտպանությանը: Նման գլուխ չկա հանրապետության գործող Սահմանադրության մեջ: Նախագծի այդ գլխում շեշտվում է, որ Հայկական ՍՍՀ-ն արտաքին-քաղաքական գործունեության մեջ առաջնորդվում է ՍՍՀՄ Սահմանադրությամբ հաստատված արտաքին քաղաքականության նպատակներով, խնդիրներով և սկզբունքներով: Այն մասնակցում է երկրի անվտանգության և պաշտպանության ամրապնդմանը, ՍՍՀՄ զինված ուժերը անհրաժեշտ ամեն ինչով ապահովելուն:

Ընկերնե՛ր: Սահմանադրության նախագծի գլխավոր առանձնահատկություններից մեկը սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ընդլայնումն ու զարգացումն է: «Այժմ մենք արդեն ոչ միայն տեսությունից, այլև բազմամյա պրակտիկայից գիտենք. ինչպես իսկական դեմոկրատիան է անհնար առանց սոցիալիզմի, այնպես էլ սոցիալիզմն է անհնար առանց դեմոկրատիայի մըշտական զարգացման,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում:— Մեր սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը մենք նախ և առաջ հասկանում ենք որպես հասարակության բոլոր գործերի կառավարմանը աշխատավորության ավելի ու ավելի լայն մասնակցության անշեղ ապահովում, որպես մեր պետականության դեմոկրատական հիմունքների հետագա զարգացում, որպես անհատի բազմակողմանի ծաղկման պայմանների ստեղծում: Այդ ուղղությամբ կուսակցությունն աշխատել է և կաշխատի այսուհետ



և»: Սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը սերտորեն առնչվում է քաղաքացիների իրավունքների և ազատությունների ընդլայնման ու խորացման հետ: Խոսքը վերաբերում է այնպիսի անհատի ձևավորմանը, որն ունակ լինի բազմապատկելու մեր հասարակության նյութական և հոգևոր հարստությունը, գիտակցաբար և բանիմացությամբ մասնակցելու հասարակական և պետական գործերի կառավարմանը: Այս խնդիրը վիթխարի է իր մասշտաբով, քանի որ խոսքը վերաբերում է մեր հասարակության բոլոր անդամներին: Խնդիրը խորապես մարդասիրական է իր իմաստով և շատ բարդ՝ իր բնույթով: Դա մի խնդիր է, որ չի առաջադրել և չէր կարող առաջադրել ոչ մի ուրիշ հասարակություն:

Պատահական չէ, որ ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ անհատի իրավունքների, ազատությունների և պարտականությունների հարցերին նվիրված է հիմնական բաժիններից մեկը: Այսպես է նաև մեր նախագծում, Հայկական ՍՍՀ Սահմանադրության նախագծի 171 հոդվածներից 37-ը նվիրված են պետության և անհատի փոխհարաբերություններին: Այդ հոդվածները նպատակամղված են անհատի իրավական դրության ամրապնդմանը, նրա իրավունքների և ազատությունների ընդլայնմանը, օրենսդրության կատարելագործմանը, այնպիսի մեխանիզմի մշակմանը, որը հուսալի երաշխիքներ ապահովի քաղաքացիների իրավունքների որևէ խախտման և բյուրոկրատական խեղաթյուրման դեմ: Ընդլայնվում են այն պարտականությունները, որ պետությունն ստանձնում է սովետական մարդկանց հարաճուն պահանջմունքների բավարարման, նրանց կենսամակարդակի ու կուլտուրայի բարձրացման համար: Մանրամասնորեն շարադրված են նաև քաղաքացիների պարտականությունները:

Ինչպես ՍՍՀՄ Սահմանադրությունը, այնպես էլ մեր նախագիծը բովանդակում է քաղաքացիների իրավունքների մի լայն սպեկտր, որը շոշափում է յուրաքանչյուրի կյանքի բուն հիմքերը. դրանք են՝ աշխատանքի, հանգստի, առողջության պահպանման, սոցիալական ապահովության, կրթության, կուլտուրայի նվաճումներից օգտվելու, գիտական, տեխնիկական ու գեղարվեստական ստեղծագործության ազատության իրավունքները: Առաջին անգամ դրույթներ են գրանցված քաղաքացիների բնակարանային իրավունքի, յուրաքանչյուր անհատի ցանկություններին ու հնարավորություններին համապատասխան և հասարակական պահանջմունքների միտումով պրոֆեսիայի ազատ ընտրության իրավունքի և այլ իրավունքների վերաբերյալ: Հասարակական գործերի կառավարմանը մասնակցելու սովետական մարդու իրավունքը ապահովվում է լրացուցիչ երաշխիքներով:

Ընդլայնվել և հարստացվել են քաղաքացիների քաղաքական իրավունքները: Սկզբունքային նշանակություն ունի պետական ու հասարակական գործերի կառավարմանը մասնակցելու, պետական ու հասարակական կազմակերպությունների գործունեության բարելավման վերաբերյալ առաջարկություններ անելու, աշխատանքի թերությունները քննադատելու իրավունքի սահմանադրական վավերագրումը:

Սոցիալական ու քաղաքական ազատությունների, տնտեսական ու կուլտուրական բարիքների միագումարով, դրանց բարոյական պոտենցիալով մեր երկիրը անհամեմատ ավելի շատ բան է տալիս անհատի զարգացման համար, քան մինչև օրս պատմության մեջ արձանագրված է որևէ երկրում: Ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասել է, որ մեր Սահմանադրության մեջ «ավելի լայնորեն, ավելի լրիվ չափով, քան որևէ տեղ և երբևէ արձանագրված են քաղաքացիների սոցիալ-տնտեսական և քաղաքական իրավունքներն ու ազատությունները և այդ իրավունքների իրականացման կոնկրետ երաշխիքները»:

ՍՍՀՄ նոր Հիմնական օրենքում արձանագրված է, որ իրավունքների և ազատությունների իրականացումը անքակտելի է քաղաքացիների կողմից պարտականությունների կատարումից, որ սոցիալիստական հասարակության յուրաքանչյուր անդամ կրում է իր քաղաքացիական պատասխանատվությունը: Հասարակությունը որքան շատ բան է տալիս անհատին, այնքան ավելի նրանից պահանջում է հասարակական-քաղաքական ակտիվություն, հասարակա-

*կան շահերով ճիշտ առաջնորդվել, իր ստեղծագործական պոտենցիալը ճիշտ օգտագործել հանուն հասարակության բարօրության:*

*Այս սկզբունքային դրույթը վավերագրված է նաև Հայկական ՍՍՀ Սահմանադրության նախագծում: Նախագծի 57-րդ հոդվածում ասված է. «Իրավունքների և ազատությունների իրականացումը անբաժանելի է քաղաքացու կողմից իր պարտականությունների կատարումից:*

*Հայկական ՍՍՀ քաղաքացին պարտավոր է պահպանել ՍՍՀՄ Սահմանադրությունը և Հայկական ՍՍՀ Սահմանադրությունը, սովետական օրենքները, հարգել սոցիալիստական համակեցության կանոնները, արժանապատվությամբ կրել սովետական քաղաքացու բարձր կոչումը»:*

*Բնական է, որ սոցիալիստական պետությունը չի կարող թույլ տալ, որ ազատություններն օգտագործվեն այն հասարակարգի դեմ, որի օգտին արդեն վաղուց է քվերակել սովետական ժողովուրդը, որի նկատմամբ հավատարմությունը նա մշտապես հաստատում է իր հայրենանվեր գործերով: Մեր հասարակությունը բացեիբաց հռչակում է, որ ինքը սահմանափակումներ և ուղղակի արգելքներ է սահմանում այնպիսի վարքագծի նկատմամբ, որը վնաս է պատճառում համաժողովրդական, պետական շահերին, սոցիալիստական հասարակության անդամների իրավունքներին և ազատություններին: Սովետական պետությունը արգելում է պատերազմի, ռասայական ու ազգային թշնամանքի պրոպագանդան, թույլ չի տալիս տարածել այնպիսի գրականություն կամ ֆիլմեր, որոնք սերմանում են բռնություն, բարոյազրկություն, այլասերում են երիտասարդ սերնդին:*

*Հենց այս պարագան է առաջացնում մեր գաղափարական հակառակորդների դժգոհությունն ու անբավականությունը: «Բացարձակ», «անսահմանափակ» ազատության կողմնակիցները դրանում տեսնում են սովետական քաղաքացիների բոլոր դեմոկրատական իրավունքների ու ազատությունների «բացասում»: Մարդու իրավունքների «ջատագովները» ձևացնում են, թե իբր իրենք չգիտեն, որ սովետական Սահմանադրության դրույթները լիովին համապատասխանում են կարևորագույն միջազգային փաստաթղթերին: Մարքսիզմ-լենինիզմը մերժում է վերացական ազատությունը: Ազատությունը դասակարգային հասկացություն է, և անսահմանափակ, վերացական ազատության քարոզը խաբեություն է ու երկերեսանիություն, ազատության դասակարգային էության քողարկում:*

*Սովետական մարդիկ պարզորոշ հասկանում են, որ սոցիալիստական հասարակության թշնամիների համար ազատության սահմանափակումը ոչ թե դեմոկրատիայի սահմանափակում է, ոչ թե արգելք է անհատի ազատության իրականացմանը, այլ, ընդհակառակը, ծառայում է իսկական դեմոկրատիայի, ժողովրդի համար դեմոկրատիայի պահպանմանը, ժողովրդի արմատական շահերի պահպանմանը հանցավոր ոտնձգություններից:*

*Սովետական նոր Սահմանադրությունը, ապահովելով հասարակական ու պետական գործերի կառավարմանը աշխատավորների գործնական մասնակցության բազմազան ձևեր ու պատշաճ թափ, նրանց իրավունքների և ազատությունների ընդլայնում, դեմոկրատիայի և մարդու իրավունքների՝ բուրժուազիայի կողմից գռեհկացված և խեղաթյուրված հասկացությունների փոխարեն պատմության նժարին է դնում մեր սիստեմի իրական դեմոկրատիզմի առավելությունների ակներև ապացույցները:*

*Իր գրեթե վեց տասնամյա սոցիալիստական զարգացման ճանապարհին հայ ժողովուրդը, Սովետական Հայաստանի աշխատավորները ռեալ սոցիալիզմի փորձով հաստատ ու անդառնալիորեն համոզվել են, որ սոցիալիզմը ամենաարդարացի հասարակարգն է, որ այն իրական հումանիզմի, ազատագրված աշխատանքի, իսկական դեմոկրատիայի, անհատի իրական ազատության, սոցիալական լավատեսության հասարակություն է, որի գլխավոր չափանիշը աշխատանքի մարդն է, հասարակություն, ուր ապահովված են աշխատանքի, կրթության ու հանգստի, աշխատավորների լրիվ զբաղվածության փաստական իրավունքները, ստեղծված են իրական պայմաններ և հնարավորություններ*



*հասարակության բոլոր անդամների բազմակողմանի զարգացման, խաղաղ ստեղծարար գործունեության համար, ուր մարդը լիովին վստահ է վաղվա օրվա նկատմամբ, իր զավակների ապագա երջանկության նկատմամբ: Հաստատ ու ընդմիշտ համոզվել են, որ սոցիալիստական դեմոկրատիան, տարածվելով սովետական հասարակության քաղաքական, տնտեսական և հոգևոր կյանքի ու հասարակության յուրաքանչյուր անդամի վրա, արտահայտում և պաշտպանում է ժողովրդի շահերը, ծառայում է կոմունիզմի գործին, որ այն ապահովում է սոցիալական արդարությունն ու սոցիալական հավասարությունը, որ սոցիալիստական դեմոկրատիան՝ դա իրավունքների ու պարտականությունների, իրական ազատության և քաղաքացիական պատասխանատվության միասնությունն է, հասարակության, կոլեկտիվի և անհատի շահերի ներդաշնակ համատեղումը:*

*Ընկերնե՛ր: Հայկական ՍՍՀ-ի ազգային պետական և վարչատերիտորիալ կառուցվածքին է նվիրված Սահմանադրության նախագծի բաժիններից մեկը, որը փոխարինում է ներկայումս գործող Սահմանադրության «Պետական կառուցվածքը» երկրորդ գլխին: Բաժնի նոր անվանումը լրիվ ու հստակորեն է արտացոլում դրա ներքին բովանդակությունը:*

*Սահմանադրության նախագծում Հայկական ՍՍՀ-ն բնորոշված է որպես սուվերեն սովետական սոցիալիստական պետություն, որը կոմունիստական հասարակարգի հաջող կառուցման, երկրի տնտեսական ու քաղաքական միասնության ամրապնդման, երկրի անվտանգության ու պաշտպանության ապահովման նպատակով իր ժողովրդի ազատ ինքնորոշման, կամավորության և իրավահավասարության հիման վրա սովետական սոցիալիստական հանրապետությունների հետ միավորվել է միասնական միութենական բազմազգ պետության՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ:*

*Պատմական փորձը համոզիչ կերպով ցույց տվեց, որ սովետական ֆեդերացիայի լենինյան սկզբունքների գործնական իրականացումը ապահովել է Սովետական Միության բոլոր ազգերի ու ազգությունների բազմակողմանի ծաղկում և մերձեցում, կյանքի բոլոր բնագավառներում նրանց եղբայրական իրավահավասար ազգամիջյան համագործակցության հետագա ուժեղացում, բոլոր սովետական հանրապետությունների սոցիալ-տնտեսական և կուլտուրական աննախադեպ առաջընթաց:*

*Այն ամենի համար, ինչ ձեռք է բերել հայ ժողովուրդը սոցիալիստական շինարարության տարիներին, հետամնացությունից ու ավերածությունից թռիչք կատարելով մինչև ժամանակակից տնտեսական զարգացման և քաղաքակրթության բարձունքները, նա պարտական է ՍՍՀՄ միասնական ընտանիքի մեջ համախմբված եղբայրական ժողովուրդների լենինյան բարեկամությանը, նրանց օգնությանը և փոխօգնությանը, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային իմաստուն քաղաքականությանը:*

*Եվ մեր հետագա զարգացման հաստատուն գրավականը կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունն է, ժողովուրդների անխախտ բարեկամությունը, ինտերնացիոնալիզմը:*

*Ինտերնացիոնալիզմով են տոգորված մեր կյանքի ու կենսագործունեության բոլոր ոլորտները՝ էկոնոմիկայից մինչև գաղափարախոսություն, ազգամիջյան հարաբերություններից մինչև մարդկային հարաբերություններն ու հոգեբանությունը: Մենք այսօր հպարտությամբ կարող ենք արձանագրել, որ կոմունիստական կուսակցության հետևողական աշխատանքի շնորհիվ, Սովետական Հայաստանի, ինչպես և մեր մեծ հայրենիքի բոլոր աշխատավորները դաստիարակվել են որպես սովետական հայրենասերներ և խանդավառ ինտերնացիոնալիստներ: Պրոլետարական ինտերնացիոնալիզմը մեր հանրապետության աշխատավորների հավատո հանգանակն է, և հենց ինտերնացիոնալիզմի գաղափարներով է տոգորված մեր հանրապետության նոր Սահմանադրության նախագիծը:*

*Ինչպես ՍՍՀՄ Սահմանադրությունը, այնպես էլ Հայկական ՍՍՀ-ի հիմ-*

նական օրենքի նախագիծը արտացոլում են սովետների երկրի նյութական արտադրության ու հոգևոր կյանքի ինտերնացիոնալացման, այն պրոցեսի ավելի բարձր աստիճանը, որը զարգանում է սոցիալիզմի պայմաններում, իրոք դեմոկրատական հունով։

Նախագծում նշված է, որ ՍՍՀՄ Սահմանադրությանը համապատասխան, Հայկական ՍՍՀ սուվերեն իրավունքները պահպանում է ՍՍՀ Միությունը։ Հայկական ՍՍՀ-ն մասնակցում է ՍՍՀ Միության տնօրինությանը վերապահված հարցերի լուծմանը ՍՍՀՄ Գերագույն սովետում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում, ՍՍՀՄ կառավարությունում և ՍՍՀ Միության մյուս մարմիններում։ ՍՍՀՄ Սահմանադրությանը համապատասխան, Հայկական ՍՍՀ-ն, հանձին պետական իշխանության իր բարձրագույն մարմինների, ունի օրենսդրական նախաձեռնության իրավունք ՍՍՀՄ Գերագույն սովետում։

Ընկերնե՛ր։ Սահմանադրության նախագծի՝ «Հայկական ՍՍՀ-ի ժողովրդական դեպուտատների սովետները և նրանց ընտրության կարգը» բաժնում սահմանված են հանրապետության սովետների սիստեմը, դրանց գործունեության հիմնական սկզբունքները, ընտրական սիստեմը և ժողովրդական դեպուտատի իրավական ստատուսը։ Նախագիծն իր հիմքում պահպանում է հանրապետության պետական մարմինների գոյություն ունեցող սիստեմը, միաժամանակ անհրաժեշտ փոփոխություններ է մտցնում դրանց իրավասության, գործունեության կարգի մեջ, զարգացած սոցիալիստական հասարակության խնդիրների և պահանջմունքների համեմատ։

Նախագիծը սահմանում է ժողովրդական դեպուտատների սովետների լիազորությունների նոր ժամկետներ. Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի համար՝ 5 տարի, ժողովրդական դեպուտատների շրջանային, քաղաքային, քաղաքների շրջանային, գյուղական և ավանային սովետների համար՝ երկուսուկես տարի։ Նախագիծը հանրապետության Գերագույն սովետում ընտրվելու իրավունք է տալիս 18 տարին լրացած բոլոր քաղաքացիներին։

Ավելի հստակորեն է սահմանվում հանրապետության Գերագույն սովետի, նրա նախագահության և Մինիստրների խորհրդի սահմանադրական ստատուսը, կատարելագործվում են նրանց կազմակերպական կառուցվածքը և աշխատանքի կազմակերպման ձևերը։ Մեր օրենսդրության մեջ առաջին անգամ վավերագրվում է ոչ թե ներկայացուցչության որոշակի նորմա, այլ Գերագույն սովետի դեպուտատների ընդհանուր թիվը։ Նախագծի 99-րդ հոդվածում ասված է. «Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը բաղկացած է 340 դեպուտատներից, որոնք ընտրվում են ըստ հավասար թվով բնակչություն ունեցող ընտրական օկրուգների»։ Հարցի այսպիսի լուծումը վերացնում է ներկայացուցչության նորմաները և հանրապետության Գերագույն սովետի թվական կազմը պարբերաբար փոփոխելու անհրաժեշտությունը։ Բացի այդ, ընտրական օկրուգները կդառնան հաստատուն։

Հայկական ՍՍՀ պետական իշխանության և կառավարման տեղական մարմիններին նվիրված՝ նախագծի գլուխներում արտացոլված է այն հսկայական աշխատանքը, որ վերջին տարիներին կուսակցությունն իրագործել է տեղական սովետներն ամրապնդելու և տնտեսական ու սոցիալ-կուլտուրական շինարարության ղեկավարման մեջ դրանց դերը բարձրացնելու նպատակով։ Նախատեսվում է զգալիորեն ընդլայնել բոլոր մակարդակների տեղական սովետների իրավունքները, բարձրացնել նրանց պատասխանատվությունը։

Կոմունիստական կուսակցությունը միշտ էլ ելել է այն բանից, որ յուրաքանչյուր ժողովրդական սովետ գերագույն իշխանության մասնիկն է, որ այն ոչ միայն օժտված է իր տնօրինությանը վերապահված բոլոր հարցերը լուծելու լիազորություններով, այլև հանդես է գալիս որպես համապետական որոշումներ իրականացնող։

Սահմանադրության նախագծում նոր գլուխ է նախատեսված Հայկական ՍՍՀ տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանի վերաբերյալ, որտեղ շարադրված են նրա բնութագրումը և կազմավորման ու մշակման սկզբունքները։ Պետական բյուջեի վերաբերյալ գլխի հետ միասին պետական



պլանի մասին գլուխը կազմում է Սահմանադրության մի առանձին բաժին, որով արտահայտվում է պլանի ու պետբյուջեի փոխկապակցության սկզբունքը։

Սոցիալիստական օրինականության և իրավակարգի հետագա ամրապնդումը, այն բոլոր մարմինների աշխատանքի բարելավումը, որոնք կոչված են ապահովել սովետական օրենքների խստիվ ու անշեղ կիրառումը, քաղաքացիների իրավունքների պաշտպանությունը, իրենց խոր ու համակողմանի արտացոլումն են գտել նոր Սահմանադրության նախագծում։

Համառոտակի սրանք են Հայկական ՍՍՀ Սահմանադրության նախագծի բովանդակության գլխավոր հատկանիշները։

## IV

Ընկեր դեպուտատնե՛ր։

Սահմանադրության նախագծի մշակման և քննարկման կապակցությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, հանրապետության Գերագույն սովետի նախագահությունը, կուսակցական և սովետական մարմինները կազմակերպչական և քաղաքական մեծ աշխատանք կատարեցին։ Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրության նախագծի հրապարակման օրվանից մինչև Գերագույն սովետի ներկա նստաշրջանը հանրապետությունում տեղի ունեցավ դրա ազատ, գործնական և իրոք համաժողովրդական քննարկում։ Այդ քննարկման եզրափակիչ փուլը Գերագույն սովետի ներկա նստաշրջանն է։

Նախագիծը քննարկվեց արտադրական ձեռնարկությունների և կոլտնտեսությունների, գիտական հիմնարկությունների, ստեղծագործական կազմակերպությունների, բարձրագույն ուսումնական հաստատությունների, ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտների աշխատողների կոլեկտիվների ժողովներում, ըստ քաղաքացիների բնակության վայրի, զորամասերում։ Այն քննարկվեց սկզբնական կուսակցական կազմակերպությունների ժողովներում, ժողովրդական դեպուտատների քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական սովետների նստաշրջաններում, կոմերիտական և արհմիութենական կազմակերպություններում։

Սահմանադրության նախագծի վերաբերյալ կարծիքների լայն ու գործարար փոխանակություն կազմակերպվեց հանրապետության թերթերի ու հանդեսների էջերում, քաղաքային և շրջանային մամուլում, հեռուստատեսությամբ և ռադիոյով։

Սահմանադրության նախագիծը քննարկվեց ընտրողների հետ հանրապետության Գերագույն սովետի դեպուտատների՝ ներկա նստաշրջանին նախորդած բազմաթիվ հանդիպումներում։

Կարելի է ասել, որ ինչպես ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկման ժամանակ, այնպես էլ այժմ, հանրապետության գրեթե ողջ չափահաս բնակչությունը, կուսակցական, կոմերիտական, արհմիութենական և հասարակական կազմակերպությունները, ժողովրդական դեպուտատների տեղական սովետները ամենաակտիվ և անմիջական մասնակցություն ցուցաբերեցին Հայկական ՍՍՀ նոր Հիմնական օրենքի նախագծի ազատ և գործարար քննարկմանը։

Նոր Սահմանադրության նախագիծը ուշի-ուշով, մանրակրկիտ կերպով վերլուծում և քննարկում էին հանրապետության բնակչության բոլոր խավերի, տարբեր պրոֆեսիաների, տարիքի և ազգության մարդիկ, կոմունիստներն ու անկուսակցականները, նրանց տեսադաշտում էին Սահմանադրության նախագծի յուրաքանչյուր բաժինը, դրա յուրաքանչյուր գլուխն ու հոդվածը։

Սահմանադրության նախագծի քննարկման ժամանակ աշխատավորների քաղաքական և քաղաքացիական բուռն ակտիվությունը, ցուցաբերած մեծ հետաքրքրությունը ակնբախորեն արտացոլում են սովետական մարդու սոցիալիստական ապրելակերպի գլխավոր կողմերից մեկը, այն մարդու, որը իրեն չի տարանջատում պետությունից, պետական շահերի, համաժողովրդական շահերի պաշտպանումը համարում է իր կենսական գործը։

Այս ամենը, ընկե՛ր դեպուտատներ, մեզ հիմք է տալիս գոհունակությամբ

ասելու, որ այդքան գործարար և ակտիվ մասնակցություն ցուցաբերելով քննարկմանը, հանրապետության բանվորները, կոլտնտեսականներն ու մտավորականությունը, բոլոր աշխատավորները ըստ էության դարձան Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության նոր Հիմնական օրենքի ստեղծողները։

Թույլ տվեք այս բարձր ամբիոնից, հանրապետության Գերագույն սովետի անունից սրտագին շնորհակալություն հայտնել Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկման յուրաքանչյուր մասնակցի և նրանց ջերմորեն մաղթել հետագա հաջողություններ հասարակական-քաղաքական և անձնական կյանքում, պետական գործերում, իրենց ստեղծարար աշխատանքում՝ ի բարօրություն մեր մեծ հայրենիքի։

Սահմանադրական հանձնաժողովը մեծ գոհունակությամբ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետին զեկուցում է, որ հանրապետության նոր Սահմանադրության նախագիծը, դրա բոլոր դրույթները համաժողովրդական քննարկման ընթացքում ամենուրեք լիակատար պաշտպանության և միահամուռ հավանության են արժանացել։

Դա է, առաջին հերթին, այդ կարևորագույն փաստաթղթի համաժողովրդական քննարկման գլխավոր քաղաքական արդյունքը։

Նախագծի համաժողովրդական քննարկումը ցույց տվեց, որ մեր աշխատավորները նոր Սահմանադրությունն ընդունում են որպես Սովետական Հայաստանի ծաղկման ու հետագա բարգավաճման, ժողովրդի բարօրության նկատմամբ լենինյան կուսակցության հոգատարության մի նոր, վառ դրսևորում։ Հանրապետության Հիմնական օրենքի նախագծի միահամուռ հավանությունը նոր, ցայտուն հաստատումն է այն բանի, որ հայ ժողովուրդը, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորները ամբողջովին ու լիովին պաշտպանում են մեր լենինյան կոմունիստական կուսակցության ներքին և արտաքին քաղաքականությունը։

Հայ ժողովուրդը, հանրապետության աշխատավորները նոր Հիմնական օրենքի նախագիծն ընդունեցին մեր մեծ հայրենիքի՝ ՍՍՀ Միության նկատմամբ տածած սիրո, նվիրվածության, օրինական հպարտության վեհ զգացումով, միություն, որի կազմում, եղբայրական միութենական հանրապետությունների միասնական ինտերնացիոնալ ընտանիքում, Սովետական Հայաստանը հասարակական առաջընթացի և սոցիալիստական մեծ վերափոխումների փառավոր ուղի է անցել։

Նրանք այդ փաստաթուղթն ընդունեցին Սովետական Միության կոմունիստական կուսակցության, նրա փորձված մարտական շտաբի՝ Կենտրոնական կոմիտեի, Կենտկոմի քաղբյուրոյի և անձամբ Կենտկոմի գլխավոր քարտուղար, սովետական համաժողովրդական պետության ղեկավար, մեր ժամանակի քաղաքական և պետական ականավոր գործիչ, հավատարիմ լենինյան ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի նկատմամբ խորին շնորհակալության և անսահման երախտագիտության զգացումով՝ կուսակցության գլխավոր գծի հետևողական կենսագործման համար, լենինյան ազգային քաղաքականության անշեղ իրականացման համար, որի դրսևորման կոնկրետ փաստերից մեկը Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության նոր Սահմանադրության ծնունդն է։

Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկման ընթացքում մեծ թվով առաջարկություններ են ստացվել առանձին հոդվածների վերաբերյալ։

Սահմանադրական հանձնաժողովը մանրակրկիտ կերպով, ամենայն ուշադրությամբ ուսումնասիրեց և քննության առավ դրանք։ Ընդհանրացնելով նախագծի համաժողովրդական քննարկման մասնակիցների առաջարկություններն ու ցանկությունները, կարելի է դրանք ստորաբաժանել հետևյալ խմբերի։

Առաջին խումբը, ընդ որում, առավել մեծաթիվը, ընդգրկում է այն առաջարկությունները, որոնք տարբեր շարադրանքով և ձևակերպումներով արտահայտում են Սահմանադրության նախագծի համապատասխան հոդվածների



նույն միտքը։ Քանի որ ստացված առաջարկներն ըստ էության ոչ մի սկզբունքային և իմաստային փոփոխություն չեն մուծում հոդվածների մեջ, սահմանադրական հանձնաժողովը նպատակահարմար է գտնում ուժի մեջ թողնել նախագծում շարադրված տեքստերը։

Երկրորդ խումբը ընդգրկում է այն առաջարկությունները, որոնք լրացնում են Սահմանադրության նախագծի համապատասխան հոդվածները, ճշգրտում և բարելավում են դրանց ձևակերպումներն ու բովանդակությունը։

Աշխատավորների ժողովներում և տեղական սովետների նստաշրջաններում հանրապետության Հիմնական օրենքի նախագծի համաժողովրդական քննարկման ժամանակ մեծ թվով առաջարկություններ արվեցին քաղաքների, գյուղերի և ավանների բարեկարգման գործի, բնակարանային և ճանապարհային շինարարության, տրանսպորտի աշխատանքի արմատական բարելավման վերաբերյալ։ Իրավացիորեն նշվեց, որ այդ բնագավառներում կան լուրջ թերություններ և վրիպումներ։

Ձեզ քաջ հայտնի է այն մեծ ուշադրությունը, որ կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը նվիրում են սոցիալական մեծ նշանակություն ունեցող այդ գործին։ Սովետական իշխանության տարիներին, հատկապես վերջին երեք հնգամյակների ընթացքում, հանրապետությունում այդ նպատակով մեծ աշխատանք է կատարվել։ Այժմ այդ աշխատանքի մասշտաբներն ընդլայնվել են, իսկ տեմպերը՝ մեծապես արագացել։

Սակայն բոլորիս համար հասկանալի է այն մտահոգությունը, որ արտահայտվում է աշխատավորների ելույթներում ու նրանց ցանկություններում։ Դրանց նպատակն է ավելի ամրապնդել պետական կարգուկանոնը այդ համաժողովրդական գործում։

Նկատի ունենալով այդ հարցերի ողջ կարևորությունը մեր սոցիալ-տնտեսական քաղաքականության, ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման համար, նպատակահարմար կլիներ դրանք սահմանադրական մակարդակի հասցնել, այն հաշվով, որպեսզի համապատասխան արտացոլում ստանան հանրապետության Հիմնական օրենքի մեջ։

Աշխատավորների առաջարկություններին համապատասխան, սահմանադրական հանձնաժողովը հնարավոր է համարում Սահմանադրության նախագծի՝ «Հայկական ՍՍՀ ազգային-պետական և վարչատերիտորիալ կառուցվածքը» բաժնի 70-րդ հոդվածում լրացուցիչ ձևակերպում նախատեսել բնակարանային շինարարության, քաղաքների և մյուս բնակավայրերի բարեկարգման, ճանապարհային շինարարության և տրանսպորտի պետական ղեկավարման մասին։

Նախագծի 70-րդ հոդվածի 11-րդ ենթակետի լրացման՝ սահմանադրական հանձնաժողովի կողմից հանձնարարվող տեքստը բոլոր դեպուտատներն ունեն։

Բազմաթիվ առաջարկություններ են ստացվել նախագծի 103-րդ հոդվածի լրացման վերաբերյալ։ Ընկերներն առաջարկում են, որպեսզի Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի կամ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության որոշմամբ անհրաժեշտ պարագաներում ժողովրդական քննարկման հանձնվեն ոչ միայն Հայկական ՍՍՀ օրենքների նախագծերը, այլև հանրապետության պետական կյանքի որոշ կարևոր հարցեր։

Այդպիսի լրացումը, իրոք, բխում է մեր պետության դեմոկրատական սկզբունքներից, է՛լ ավելի շեշտում նրա համաժողովրդական էությունը և ցուցադրում է քաղաքացիների քաղաքական հասունությունն ու սոցիալական ակտիվությունը։ Սահմանադրական հանձնաժողովը պաշտպանում է այդ առաջարկությունը։ Համապատասխան հանձնարարականը ձեզ մոտ կա։

Սահմանադրական հանձնաժողովը նպատակահարմար է գտնում նաև լրացնել 120-րդ հոդվածը, նշելով, որ հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահության կազմի մեջ մտնում են Մինիստրների խորհրդի նախագահը, նախագահի առաջին տեղակալը, նախագահի տեղակալները, ինչպես նաև կառավարության այլ անդամներ՝ հանրապետության Մինիստրների խորհրդի մասին օրենքին համապատասխան։ Հանրապետության Մինիստրների

խորհրդի վերաբերյալ օրենքը կմշակվի սահմանադրության ընդունումից հետո։

Քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական սովետների նստաշրջաններում դեպուտատներն առաջարկեցին Սահմանադրության նախագծի «Հայկական ՍՍՀ պետական իշխանության և կառավարման տեղական մարմինները» բաժնի 132-րդ հոդվածը զգալիորեն ընդլայնել և շեշտել քաղաքացիների լայն ներգրավումը տեղական սովետների մշտական հանձնաժողովների աշխատանքում, կարևոր հարցերի քննարկմանը նրանց մասնակից դարձնելը, բնակչության հասարակական ինքնագործունեության զարգացումը։

Քաղաքացիները համանման առաջարկություններ են արել մամուլի էջերում ևս։

Այդ առաջարկությունները լուրջ ուշադրության են արժանի և ավելի հրստակորեն են ընդգծում ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքի դեմոկրատական սկզբունքները, այն է՝ պետական և հասարակական գործերի կառավարման մեջ աշխատավորների լայն ներգրավումը, հրապարակայնության ապահովումն ու ընդլայնումը, աշխատանքում հասարակական կարծիքը մշտապես հաշվի առնելը և այլն։

Սահմանադրական հանձնաժողովը օրինաչափ է համարում ընդունել այդ առաջարկությունները և հանձնարարում է 132-րդ հոդվածը խմբագրել հետևյալ ձևով. «Հոդված 132. Ժողովրդական դեպուտատների տեղական սովետներն իրենց գործունեությունը իրականացնում են սերտորեն կապված հասարակական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների հետ, առավել կարևոր հարցերը ներկայացնում են քաղաքացիների քննարկմանը, նրանց ներգրավում մշտական հանձնաժողովների, գործադիր կոմիտեների և սովետների առջև հաշվետու մյուս մարմինների աշխատանքում, ուղղություն են տալիս տեղական կամավոր ընկերությունների աշխատանքին և զարգացնում բնակչության հասարակական ինքնագործունեությունը»։

Համաժողովրդական քննարկման ընթացքում կարծիքների լայն փոխանակություն տեղի ունեցավ սովետների աշխատանքի դեմոկրատական հիմունքների, դրանց նստաշրջանների գործունեության, սովետների մշտական հանձնաժողովների աշխատանքի մասին։ Այդ կարծիքների և առաջարկությունների գերակշռող մեծամասնությունը, ինչպես ասացինք, արդեն հաշվի է առնված Հիմնական օրենքի նախագծում։ Սակայն, ի լրումն դրանց, հարկ կլիներ, ինչպես առաջարկում են քննարկման մասնակիցները, 147-րդ հոդվածում, որը խոսում է հանրապետության պետական բյուջեն Գերագույն սովետին ներկայացնելու կարգի և նրա քննարկման մասին, սահմանել Գերագույն սովետի համապատասխան մշտական հանձնաժողովների ֆունկցիաները։

Այդ կապակցությամբ սահմանադրական հանձնաժողովը նպատակահարմար է գտնում Սահմանադրության նախագծի հիշյալ հոդվածում նշել, որ Հայկական ՍՍՀ պետական բյուջեն Գերագույն սովետը քննարկում է Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի զեկուցման և Գերագույն սովետի պլան-բյուջետային ու մյուս մշտական հանձնաժողովների եզրակացության հիման վրա։ Այլ կերպ ասած, Հիմնական օրենքում վավերագրել այն, ինչն արդեն գործնականում իրականացվում է հանրապետության պետական իշխանության բարձրագույն մարմնի աշխատանքային պրակտիկայում։ Այդ լրացման հանձնարարվող տեքստը նույնպես կա բոլոր դեպուտատների մոտ։

Սահմանադրության նախագծի առթիվ առաջարկությունների և դիտողությունների մի մեծ խումբ զուտ խմբագրական բնույթի է։ Ստացվել են հարյուրից ավելի այդպիսի առաջարկություններ։ Դրանց մեծամասնությունը հաշվի է առնված։

Եվ, վերջապես, այն առաջարկությունների մասին, որոնք սահմանադրական հանձնաժողովը նպատակահարմար չի գտել ընդունել։

Օրինակ, առաջարկություններ են եղել այն մասին, որ հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ ընտրվելու համար տարիքային ցենզը սահմանվի 21 տարեկան, Սահմանադրության նախագծով նախատեսված 18 տարեկանի փոխարեն։ Սահմանադրական հանձնաժողովը օրինական չի համարում ընդունել այդ առաջարկությունը հետևյալ նկատառումներով։ Աշխատավորների կոլեկտիվները, առաջադրելով դեպուտատության թեկնածուներ, համակողմանիորեն և մանրակրկիտ կերպով քննարկում են նրանց քաղաքական և գործարար հատկանիշները, նրանց ներկայացնելով ժողովրդի ընտրյալ պետական գործչին համապատասխանող բարձր պահանջները։



Կոմունիստական կուսակցության կողմից դաստիարակվող մեր երիտասարդությունը կարող է իր միջավայրից առաջ քաշել հանրապետության պետական իշխանության բարձրագույն մարմնի արժանավոր դեպուտատներ։ Ուստի սահմանադրական հանձնաժողովը հանձնարարում է նախագծի այդ հոդվածը թողնել անփոփոխ։

Առաջարկություններ են ստացվել՝ Սահմանադրության մեջ դրույթ նախատեսել, որով դեպուտատի համար պայմաններ ստեղծվեն տարեկան մեկ անգամ մի ամբողջ ամիս զբաղվելու միայն իր դեպուտատական պարտականությունների կատարմամբ։ Մեր կարծիքով, այս առաջարկը չի համապատասխանում սովետական դեպուտատի ստատուսին, որն իր աշխատանքային գործունեությունը զուգակցում է հասարակական դեպուտատական գործունեության հետ։ Ուստի և՝ աննպատակահարմար է ընդունել այդ առաջարկությունը։

Շատ առաջարկություններ են արվել երեխաների դաստիարակության համար ծնողների պատասխանատվությունը բարձրացնելու մասին, սոցիալիստական սեփականությունը հափշտակողների դեմ, հակահասարակական ապրելակերպ վարող, հանրօգուտ աշխատանքից խուսափող անձանց, սովետական օրենքները խախտողների դեմ մղվող պայքարի հարցերի վերաբերյալ և այլն։ Առաջարկություններում ցանկություններ են հայտնվում այդ բոլոր հարցերի կապակցությամբ Սահմանադրության մեջ նախատեսել համապատասխան հոդվածներ։

Սահմանադրական հանձնաժողովն ըստ էության ճիշտ համարելով այդ հարցադրումները և բարձր գնահատելով այն մտահոգությունը, որն արտահայտել են քննարկման մասնակիցները այդ կապակցությամբ, միաժամանակ գտնում է, որ Հիմնական օրենքում պետք չէ այդ բանն անել, քանի որ նախագծում այդ հարցերի հետ առնչվող բոլոր սահմանադրական սկզբունքները լրիվին նախատեսված են։ Հանրապետության նոր Սահմանադրության ընդունումից հետո գործող օրենսդրությունը և օրինադրությունները կկատարելագործվեն, դրանց մեջ կարվեն որոշ փոփոխություններ՝ ելնելով նոր Հիմնական օրենքից։ Այդ աշխատանքը կատարելու ժամանակ հաշվի կառնվեն հիշյալ հարցերի առնչությամբ ստացված առաջարկությունները։

Սահմանադրական հանձնաժողովը քննարկեց նաև այն առաջարկությունները, որ «Հայկական ՍՍՀ ազգային-պետական և վարչատերիտորիալ կառուցվածքը» բաժնի 78-րդ հոդվածում չթվարկվեն հանրապետական ենթակայության քաղաքները և հանրապետության շրջանները, այլ գրվի, որ Հայկական ՍՍՀ-ում կան շրջաններ և հանրապետական ենթակայության քաղաքներ։ Այդ առաջարկությունները փաստարկվում են նրանով, որ գոյություն ունեցող շրջանները խոշորացնելիս կամ բաժանելիս և քաղաքները շրջանային ենթակայությունից հանրապետական ենթակայության փոխադրելիս հարկ չի լինի համապատասխան փոփոխություններ մտցնել Սահմանադրության մեջ։

Հանձնաժողովը գտնում է, որ Հիմնական օրենքում շրջանների և հանրապետական ենթակայության քաղաքների անվանումների նշումը արգելակող հանգամանք կլինի որոշ աշխատողների համար, որոնք լրջմտորեն չեն վերաբերվում հանրապետության վարչատերիտորիալ կառուցվածքի փոփոխմանը։ Մենք պետք է նկատի ունենանք, որ շրջանների փոփոխումը և այդ հիման վրա նոր շրջանների ստեղծումը, ինչպես նաև քաղաքների փոխդասումը մի ենթակայությունից մյուսը, միանգամայն լուրջ և պատասխանատու գործ է։ Դա առնչված է տնտեսական, սոցիալ-կուլտուրական և վարչական-կառավարման բարդ հարցերի հետ։ Զպետք է հրապուրվել դրանով։ Հարկ է ասել, որ մեզանում այդ հարցերում որոշ վնասակար սովորույթ եղել է։ Առանձին դեպքերում այդ գործում եղել է հապճեպություն և բացահայտ չհիմնավորվածություն։

Անհրաժեշտ փոփոխությունները կարելի է և պետք է անել միայն այն դեպքերում, երբ կյանքի, սոցիալ-տնտեսական զարգացման օբյեկտիվ պայմանները դրանք կթելադրեն։

Սահմանադրական հանձնաժողովը աննպատակահարմար գտավ ընդունել նաև մի շարք այլ առաջարկություններ, որոնք իրենց էությամբ անընդունելի են կամ իրենց մակարդակով չեն համապատասխանում այնպիսի համապետական փաստաթղթին, որպիսին հանրապետության Հիմնական օրենքն է։

Ընկերնե՛ր։ Նոր Սահմանադրության նախագծի քննարկման ժամանակ աշխատավորական կոլեկտիվների ժողովներում, ինչպես նաև առանձին քաղաքացիներ իրավացի քննադատական դիտողություններ էին անում արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսության, բնակչության կենցաղային սպասարկման, առևտրի, տրանսպորտի և այլ բնագավառների, աշխատանքի տարբեր ոլորտներում տեղ գտած թերությունների վերաբերյալ։ Առաջարկվում էին կառավարման պետական մարմինների և հասարակական կազմակերպությունների գործունեությունը բարելավելու միջոցառումներ։ Շատ ելույթներում խոսվում էր այն մասին, որ հարկավոր է է՛լ ավելի ուժեղացնել պայքարը պետական և աշխատանքային կարգապահության չարամիտ խախտողների, հակահասարակական բացասական երևույթների և դրանց կրողների դեմ, որոնք մեր սոցիալիստական ապրելակերպի բուն էության հակոտնյաներն են։

Անհրաժեշտ է Գերագույն սովետին զեկուցել, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի՝ երեկ տեղի ունեցած պլենումը բոլոր կուսակցական և պետական մարմիններին, հասարակական կազմակերպություններին հանձնարարեց՝ հանգամանորեն քննության առնել այդ առաջարկություններն ու կոնկրետ ահազանգերը, մշակել և ձեռնարկել անհրաժեշտ միջոցներ կուսակցական, պետական և հասարակական մարմինների աշխատանքի հետագա կատարելագործման, մեր կենսագործունեության բոլոր ոլորտներում տեղ գտած թերությունների շուտափույթ վերացման, ամենուրեք կազմակերպվածության և կարգապահության բարձրացման համար, բացասական երևույթների դեմ մղվող պայքարի ուժեղացման համար։

Ընկեր դեպուտատնե՛ր։ Ահա այն գլխավոր հարցերը, որոնք սահմանադրական հանձնաժողովն անհրաժեշտ համարեց հանրապետության Գերագույն սովետին զեկուցել Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկման կապակցությամբ։

Հազարավոր աշխատավորների համար Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկումը քաղաքական մեծ դպրոց եղավ։ Այն ժողովրդի մեջ արթնացրեց ստեղծագործական նոր ուժեր, առաջ բերեց ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների կենսագործման համար աշխատավորների պայքարի նոր վերելք։

Հանրապետության աշխատավորները հաջողությամբ ավարտեցին հնգամյակի հարվածային աշխատանքի տարվա առաջին եռամսյակը։ Արդյունաբերական արտադրանքի իրացման պլանը կատարվել է 102,1 տոկոսով։ Արտադրանքի ծավալի աճը, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, կազմել է 8,1 տոկոս։ Բարձրացել է նաև թողարկվող արտադրանքի որակը։ Ներկայումս հանրապետությունում ավելի քան 1.300 արտադրատեսակ թողարկվում է պետական որականիշով, որոնց տեսակարար կշիռը արտադրության ընդհանուր ծավալում կազմում է մոտավորապես 11 տոկոս։

Կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում հաջողությամբ է ավարտվում անասունների ձմեռումը։ Անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, 1978 թվականի առաջին եռամսյակում զգալիորեն ավելացել է անասունների և թռչունների գլխաքանակը, բարձրացել է անասնաբուծության մթերատվությունը։ 7,3—8,5 տոկոսով գերակատարվել է պետությանը կաթ և միս վաճառելու եռամսյակային պլանը։ Տնտեսություններում սկսվել և հաջողությամբ են կատարվում գարնան դաշտային աշխատանքները, դրվում է ընթացիկ տարվա բերքի ամուր հիմքը։



Մեծ խանդավառությամբ են աշխատում ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի, գիտության, կուլտուրայի և արվեստի աշխատողները։

Մեր կարևորագույն պարտքն է ամրապնդել ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրությունների հարուցած աշխատանքային և քաղաքական խանդավառությունը, է՛լ ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման 1978 թվականի պլանի և ամբողջ հնգամյակի հաջող կատարման համար, ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտներում արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը ըստ ամենայնի բարձրացնելու համար։

Կուսակցության XXV համագումարի որոշումների և երկրի սոցիալ-տնտեսական զարգացման տասներորդ հնգամյա պլանի առաջադրանքների կատարման համար կոմունիստների և ողջ աշխատավորության ուժերի հետագա մոբիլիզացմանը մեծապես կնպաստի մեր աշխատանքների տարբեր բնագավառներում գործերի վիճակը բարելավելուն նպատակամղված այն խորհուրդների և ցուցումների իրականացումը, որոնք արվեցին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության Նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի կողմից երկրի արևելյան շրջանները շրջագայելիս աշխատավորական կոլեկտիվներում և մի շարք երկրամասերի ու մարզերի կուսակցական-տնտեսական ակտիվներում ունեցած զրույցների և ելույթների ժամանակ։

Այդ զրույցները և ելույթները մեկ անգամ ևս համոզիչ կերպով վկայում են այն մեծ ու հետևողական աշխատանքի մասին, որ իրականացնում է լենինյան կուսակցությունը սովետների երկրի տնտեսական զարգացման, նրա պաշտպանունակության ամրապնդման, սովետական ժողովրդի բարեկեցության, մեր մեծ հայրենիքի միջազգային հեղինակության հետագա բարձրացման ասպարեզում։

Ընկեր դեպուտատնե՛ր։ Սահմանադրության նախագծի քննարկումը մեկ անգամ ևս ցույց տվեց, թե որքան ամուր ու կենսատու է հանրապետության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության միասնությունը։ Այն մեկ անգամ ևս ցույց տվեց հայ ժողովրդի, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորների սերտ համախմբվածությունը Սովետական Միության կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը։

Սահմանադրությունը խոր բարերար ներգործություն կունենա մեր հանրապետության կյանքի բոլոր կողմերի վրա։ Նրա յուրաքանչյուր հոդվածը, յուրաքանչյուր դրույթը, գաղափարներն ու սկզբունքները կարմատավորվեն մեր իրականության մեջ, կենդանի պրակտիկայում, կնպաստեն կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրների լուծմանը։

Թույլ տվեք, հարգելի ընկեր դեպուտատնե՛ր, հաստատ համոզմունք հայտնել, որ Գերագույն սովետը, քննության առնելով Հիմնական օրենքի նախագիծը, կընդունի Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության նոր Սահմանադրությունը, որով մի նոր փայլուն էջ կբացվի հայ ժողովրդի, հանրապետության աշխատավորության կյանքում։ Հանրապետության աշխատավորները այն կհավերժացնեն աշխատանքային նոր մեծագործություններով՝ հանուն ՍՍՀՄ ժողովուրդների ընդհանուր գործի, կոմունիստական հասարակարգի հաղթանակի։

Հայկական Սովետական Սոցիալիստական
Հանրապետության Գերագույն սովետի

# ԴԵԿԼԱՐԱՑԻԱՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ (ՀԻՄՆԱԿԱՆ ՕՐԵՆՔԸ) ԸՆԴՈՒՆԵԼՈՒ ԵՎ ՀԱՅՏԱՐԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության Գերագույն սովետը, գործելով Հայկական ՍՍՀ ժողովրդի անունից և արտահայտելով նրա սուվերեն կամքը, ընդունում է Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության Սահմանադրությունը (Հիմնական օրենքը) և հայտարարում է, որ այն գործողության մեջ է մտնում 1978 թվականի ապրիլի 14-ից:

**Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ՝**
**Բ. ՍԱՐԿԻՍՈՎ**

**Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝**
**Մ. ԲԱԽՉԻՆՅԱՆ**

*14 ապրիլի 1978 թվականի, քաղ. Երևան*

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆ

## (Հիմնական օրենք)

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որ կատարեցին Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները՝ Վ. Ի. Լենինի գլխավորած կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հայ ժողովրդի համար, ինչպես և երկրի մյուս ժողովուրդների համար, նշանավորեց պատմական շրջադարձ, որից սկսվեց նրա նոր պատմությունը, սոցիալական և ազգային վերածնունդը, նրա սոցիալիստական պետականության հաստատումը:*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի և սովետների իշխանության հաստատման շնորհիվ մեր երկրի աշխատավորները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, իրականացրին արմատական սոցիալ-տնտեսական վերափոխումներ, պաշտպանեցին սոցիալիզմի նվաճումները և կառուցեցին զարգացած սոցիալիստական հասարակարգ՝ աշխատանքի մարդկանց իսկական ազատության հասարակարգ, որում ստեղծված են հզոր արտադրողական ուժեր, անշեղորեն բարձրանում է ժողովրդի բարեկեցությունը և կուլտուրան, ամրապնդվում է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության անխորտակելի դաշինքը:*

*Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը իրավահավասար հանրապետություն է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմում, որը մարմնավորում է սովետական ժողովրդի պետական միասնությունը, համախմբում է բոլոր ազգերին և ազգություններին համատեղ կոմունիզմ կառուցելու համար:*

*Ղեկավարվելով կոմունիզմի վեհ իդեալներով և համապատասխան ՍՍՀ Միության Սահմանադրությանը (Հիմնական օրենքին), որը վավերագրեց ՍՍՀՄ հասարակական կարգի և քաղաքականության հիմունքները, սահմանեց քաղաքացիների իրավունքները, ազատությունները և պարտականությունները, սոցիալիստական համաժողովրդական պետության կազմակերպման սկզբունքներն ու նպատակները, Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության ժողովուրդը հռչակում է սույն Սահմանադրությունը:*

# I. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԵՎ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ

## Գլուխ 1

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

Հոդված 1. *Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը սոցիալիստական համաժողովրդական պետություն է, որն արտահայտում է հանրապետության բանվորների, գյուղացիների և մտավորականության, բոլոր ազգությունների աշխատավորների կամքն ու շահերը:*

Հոդված 2. *Հայկական ՍՍՀ-ում ամբողջ իշխանությունը պատկանում է ժողովրդին:*

*Ժողովուրդը պետական իշխանությունն իրականացնում է ժողովրդական դեպուտատների սովետների միջոցով, որոնք Հայկական ՍՍՀ քաղաքական հիմքն են:*

*Մյուս բոլոր պետական մարմինները ենթակա են ժողովրդական դեպուտատների սովետների վերահսկողությանը և հաշվետու են նրանց:*

Հոդված 3. *Սովետական պետության կազմակերպումը և գործունեությունը կառուցվում են դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքին համապատասխան՝ պետական իշխանության բոլոր մարմինների ընտրովիությունը վարից վեր, նրանց հաշվետու լինելը ժողովրդին, վերադաս մարմինների որոշումների պարտադիր լինելը ստորադաս մարմինների համար: Դեմոկրատական ցենտրալիզմը միասնական ղեկավարումը զուգակցում է տեղերում հանդես բերվող նախաձեռնության և ստեղծագործական ակտիվության հետ, հանձնարարված գործի համար յուրաքանչյուր պետական մարմնի և պաշտոնատար անձի պատասխանատվության հետ:*

Հոդված 4. *Սովետական պետությունը, նրա բոլոր մարմինները գործում են սոցիալիստական օրինականության հիման վրա, ապահովում են իրավակարգի, հասարակության շահերի, քաղաքացիների իրավունքների և ազատությունների պաշտպանությունը:*

*Պետական և հասարակական կազմակերպությունները, պաշտոնատար անձինք պարտավոր են պահպանել ՍՍՀՄ Սահմանադրությունը, Հայկական ՍՍՀ Սահմանադրությունը և սովետական օրենքները:*

Հոդված 5. *Պետական կյանքի առավել կարևոր հարցերը հանձնվում են համաժողովրդական քննարկման, ինչպես նաև դրվում համաժողովրդական քվեարկության (ռեֆերենդումի):*

Հոդված 6. *Սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը, նրա քաղաքական սիստեմի, պետական ու հասարակական կազմակերպությունների միջուկը Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է: ՍՄԿԿ-ն գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին:*

*Զինված մարքս-լենինյան ուսմունքով, կոմունիստական կուսակցությունը սահմանում է հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը, ՍՍՀՄ ներքին և արտաքին քաղաքականության գիծը, ղեկավարում է սովետական ժողովրդի մեծ ստեղծարար գործունեությունը, պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ է տալիս կոմունիզմի հաղթանակի համար նրա պայքարին:*

*Բոլոր կուսակցական կազմակերպությունները գործում են ՍՍՀՄ Սահմանադրության շրջանակներում:*

Հոդված 7. *Արհեստակցական միությունները, Համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միությունը, կոոպերատիվ և հասարակական մյուս կազմակերպությունները, իրենց կանոնադրական խնդիրներին համապատասխան, մասնակցում են պետական և հասարակական գործերի կառավարմանը, քաղաքական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական հարցերի լուծմանը:*

Հոդված 8. *Աշխատավորական կոլեկտիվները մասնակցում են պետական և հասարակական գործերի քննարկմանն ու լուծմանը, արտադրության և սոցիալական զարգացման պլանավորմանը, կադրերի պատրաստմանն ու տեղաբաշխմանը, ձեռնարկությունների ու հիմնարկների կառավարման, աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավման, արտադրության զարգացման, ինչպես նաև սոցիալ-կուլտուրական միջոցառումների և նյութական խրախուսման համար նախատեսված միջոցների օգտագործման հարցերի քննարկմանն ու լուծմանը:*

*Աշխատավորական կոլեկտիվները զարգացնում են սոցիալիստական մրցությունը, նպաստում աշխատանքի առաջավոր մեթոդների տարածմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, իրենց անդամներին դաստիարակում են կոմունիստական բարոյականության ոգով, հոգ տանում նրանց քաղաքական գիտակցականության, կուլտուրայի և պրոֆեսիոնալ որակավորման բարձրացման մասին:*

Հոդված 9. *Սովետական հասարակության քաղաքական սիստեմի զարգացման հիմնական ուղղությունը սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալումն է՝ քաղաքացիների ավելի ու ավելի լայն մասնակցությունը պետության և հասարակության գործերի կառավարմանը, պետական ապարատի կատարելագործումը, հասարակական կազմակերպությունների ակտիվության բարձրացումը, ժողովրդական վերահսկողության ուժեղացումը, պետական ու հասարակական կյանքի իրավական հիմքի ամրապնդումը, հրապարակայնության ընդլայնումը, հասարակական կարծիքը մշտապես հաշվի առնելը:*

## Գլուխ 2

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

Հոդված 10. *Հայկական ՍՍՀ տնտեսական սիստեմի հիմքը արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությունն է՝ պետական (համաժողովրդական) և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության ձևով:*

*Սոցիալիստական սեփականություն է նաև արհմիութենական և այլ հասարակական կազմակերպությունների գույքը, որ նրանց անհրաժեշտ է կանոնադրական խնդիրների իրականացման համար:*

*Պետությունը պահպանում է սոցիալիստական սեփականությունը և պայմաններ է ստեղծում նրա բազմապատկման համար:*

*Ոչ ոք իրավունք չունի սոցիալիստական սեփականությունն օգտագործելու անձնական շահառության և այլ շահադիտական նպատակներով:*

Հոդված 11. *Պետական սեփականությունը ամբողջ սովետական ժողովրդի ընդհանուր ունեցվածքն է, սոցիալիստական սեփականության հիմնական ձևը:*

*Պետության բացառիկ սեփականությունն են կազմում հողը, նրա ընդերքը, ջրերը, անտառները: Պետությանն են պատկանում արդյունաբերության, շինարարության և գյուղատնտեսության մեջ եղած արտադրության հիմնական միջոցները, տրանսպորտի և կապի միջոցները, բանկերը, պետության կողմից կազմակերպված առևտրական, կոմունալ և այլ ձեռնարկությունների գույքը, քաղաքային հիմնական բնակարանային ֆոնդը, ինչպես նաև պետության խնդիրների իրականացման համար անհրաժեշտ մյուս գույքը:*

Հոդված 12. *Կոլտնտեսությունների և մյուս կոոպերատիվ կազմակերպությունների, նրանց միավորումների սեփականությունն են հանդիսանում արտադրության միջոցները և մյուս գույքը, որ նրանց անհրաժեշտ է կանոնադրական խնդիրների իրականացման համար:*

*Կոլտնտեսությունների զբաղեցրած հողը նրանց ամրացվում է անվճար և անժամկետ օգտագործման համար:*

Պետությունն աջակցում է կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության զարգացմանը և նրա մերձեցմանը պետական սեփականությանը։

Կոլտնտեսությունները, ինչպես նաև մյուս հողօգտագործողները պարտավոր են արդյունավետ օգտագործել հողը, հոգատարությամբ վերաբերվել նրան, բարձրացնել նրա բերրիությունը։

Հոդված 13. *Հայկական ՍՍՀ քաղաքացիների անձնական սեփականության հիմքը աշխատանքային եկամուտներն են։ Անձնական սեփականություն կարող են լինել առօրյա գործածության, անձնական սպառման, հարմարության և օժանդակ տնային տնտեսության առարկաները, բնակելի տունը և աշխատանքային խնայողությունները։ Քաղաքացիների անձնական սեփականությունը և նրա ժառանգման իրավունքը պահպանվում են պետության կողմից։*

*Քաղաքացիների տրամադրության տակ օգտագործման համար կարող են գտնվել հողամասեր, որոնք օրենքով սահմանված կարգով հատկացվում են օժանդակ տնտեսություն վարելու (ներառյալ անասուններ և թռչուններ պահելը), այգեգործության և բանջարաբուծության համար, ինչպես նաև անհատական բնակարանային շինարարության համար։ Քաղաքացիները պարտավոր են ռացիոնալ կերպով օգտագործել իրենց հատկացված հողամասերը։ Պետությունը և կոլտնտեսությունները աջակցում են քաղաքացիներին օժանդակ տնտեսություն վարելու գործում։*

*Քաղաքացիների անձնական սեփականություն կազմող կամ նրանց կողմից օգտագործվող գույքը չպետք է ծառայի անաշխատ եկամուտ ստանալու համար, չպետք է օգտագործվի ի վնաս հասարակության շահերի։*

Հոդված 14. *Հանրային հարստության, ժողովրդի և սովետական յուրաքանչյուր մարդու բարեկեցության աճի աղբյուրը սովետական մարդկանց՝ շահագործումից ազատ աշխատանքն է։*

*«Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սոցիալիզմի սկզբունքին համապատասխան, պետությունը վերահսկողություն է իրականացնում աշխատանքի և սպառման չափի նկատմամբ։ Նա որոշում է հարկման ենթակա եկամուտներից գանձվող հարկի չափը։*

*Հանրօգուտ աշխատանքը և նրա արդյունքները որոշում են մարդու դիրքը հասարակության մեջ։ Պետությունը, զուգակցելով նյութական և բարոյական խթանները, խրախուսելով նորարարությունը, աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքը, նպաստում է, որ աշխատանքը դառնա յուրաքանչյուր սովետական մարդու առաջին կենսական պահանջը։*

Հոդված 15. *Սոցիալիզմի օրոք հանրային արտադրության բարձրագույն նպատակը մարդկանց նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարումն է։*

*Հենվելով աշխատավորների ստեղծագործական ակտիվության, սոցիալիստական մրցության, գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների վրա, կատարելագործելով էկոնոմիկայի ղեկավարման ձևերն ու մեթոդները, պետությունն ապահովում է աշխատանքի արտադրողականության աճը. արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումը, ժողովրդական տնտեսության դինամիկ, պլանաչափ և համամասնական զարգացումը։*

Հոդված 16. *Հայկական ՍՍՀ էկոնոմիկան բաղկացուցիչ մասն է միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի, որն ընդգրկում է հանրային արտադրության, բաշխման և փոխանակության բոլոր օղակները ՍՍՀՄ տերիտորիայում։*

*Հայկական ՍՍՀ-ում էկոնոմիկայի ղեկավարումն իրականացվում է տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանների հիման վրա, հաշվի առնելով ճյուղային ու տերիտորիալ սկզբունքները, կենտրոնացված կառավարումը զուգակցելով ձեռնարկությունների, միավորումների և մյուս կազմակերպությունների տնտեսական ինքնուրույնության ու նախաձեռնության հետ։ Ընդ որում, ակտիվորեն օգտագործվում են տնտեսական հաշվարկը, շահույթը, ինքնարժեքը, տնտեսական մյուս լծակներն ու խթանները։*

Հոդված 17. *Հայկական ՍՍՀ-ում, օրենքին համապատասխան, թույլա-*



*տրվում են անհատական աշխատանքային գործունեություն տնայնագործական-արհեստագործական արտադրությունների, գյուղատնտեսության, բնակչության կենցաղային սպասարկման ոլորտում, ինչպես նաև գործունեության այլ ձևեր՝ հիմնված բացառապես քաղաքացիների և նրանց ընտանիքների անդամների անձնական աշխատանքի վրա։ Պետությունը կարգավորում է անհատական աշխատանքային գործունեությունը, ապահովելով նրա օգտագործումը հօգուտ հասարակության շահերի։*

Հոդված 18. *Ելնելով ներկա և ապագա սերունդների շահերից, Հայկական ՍՍՀ-ում անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկվում հողի ու նրա ընդերքի, ջրային ռեսուրսների, բուսական ու կենդանական աշխարհի պահպանման և գիտականորեն հիմնավորված, ռացիոնալ օգտագործման համար, օդի և ջրի մաքրության պահպանման, բնական հարստությունների վերարտադրության ապահովման և մարդու շրջակա միջավայրի բարելավման համար։*

## Գլուխ 3

## ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

Հոդված 19. *Հայկական ՍՍՀ սոցիալական հիմքը բանվորների, գյուղացիների և մտավորականության անխախտ դաշինքն է։*

*Պետությունը նպաստում է հասարակության սոցիալական միատարրության ուժեղացմանը՝ դասակարգային տարբերությունների, քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև էական տարբերությունների վերացմանը, ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների համակողմանի զարգացմանն ու մերձեցմանը։*

Հոդված 20. *«Յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է» կոմունիստական իդեալին համապատասխան, պետությունը իրեն նպատակ է դնում ընդլայնել քաղաքացիների ստեղծագործական ուժերի, ընդունակությունների ու ձիրքերի գործադրման, անհատի համակողմանի զարգացման ռեալ հնարավորությունները։*

Հոդված 21. *Պետությունը հոգ է տանում աշխատանքի պայմանների բարելավման ու պաշտպանության, նրա գիտական կազմակերպման, ֆիզիկական ծանր աշխատանքի կրճատման, իսկ հետագայում նաև լիպառ վերացման մասին՝ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման հիման վրա։*

Հոդված 22. *Հայկական ՍՍՀ-ում հետևողականորեն կենսագործվում է գյուղատնտեսական աշխատանքը ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի վերածելու, գյուղական վայրերում ժողովրդական կրթության, կուլտուրայի, առողջապահության, առևտրի և հասարակական սննդի, կենցաղային սպասարկման և կոմունալ տնտեսության հիմնարկների ցանցն ընդլայնելու, գյուղերը բարեկարգ ավանների վերափոխելու ծրագիրը։*

Հոդված 23. *Աշխատանքի արտադրողականության աճի հիման վրա պետությունը անշեղորեն իրականացնում է աշխատանքի վարձատրության մակարդակի, աշխատավորների ռեալ եկամուտների բարձրացման կուրս։*

*Սովետական մարդկանց պահանջմունքներն ավելի լրիվ բավարարելու նպատակով ստեղծվում են սպառման հանրային ֆոնդեր։ Պետությունը հասարակական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների լայն մասնակցությամբ ապահովում է այդ ֆոնդերի աճն ու արդարացի բաշխումը։*

Հոդված 24. *Հայկական ՍՍՀ-ում գործում և զարգանում են առողջապահության, սոցիալական ապահովության, առևտրի ու հասարակական սննդի, կենցաղային սպասարկման և կոմունալ տնտեսության պետական սիստեմներ։*

*Պետությունը խրախուսում է կոոպերատիվ և մյուս հասարակական կազմակերպությունների գործունեությունը բնակչության սպասարկման բոլոր ոլորտներում։ Նա աջակցում է մասսայական ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացմանը։*

Հոդված 25. Հայկական ՍՍՀ-ում գոյություն ունի և կատարելագործվում է ժողովրդական կրթության միասնական սիստեմ, որն ապահովում է քաղաքացիների հանրակրթական ու պրոֆեսիոնալ պատրաստությունը, ծառայում երիտասարդության կոմունիստական դաստիարակությանը, նրա հոգևոր ու ֆիզիկական զարգացմանը, նրան պատրաստում է աշխատանքի և հասարակական գործունեության համար:

Հոդված 26. Հասարակության պահանջմունքներին համապատասխան, պետությունն ապահովում է գիտության պլանաչափ զարգացումը և գիտական կադրերի պատրաստումը, կազմակերպում գիտական հետազոտությունների արդյունքների ներդրումը ժողովրդական տնտեսության մեջ և կյանքի մյուս ոլորտներում:

Հոդված 27. Պետությունը հոգ է տանում հոգևոր արժեքները պահպանելու, բազմապատկելու և դրանք սովետական մարդկանց բարոյական ու գեղագիտական դաստիարակության, նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման համար լայնորեն օգտագործելու մասին:

Հայկական ՍՍՀ-ում ըստ ամենայնի խրախուսվում է պրոֆեսիոնալ արվեստի և ժողովրդական գեղարվեստական ստեղծագործության զարգացումը:

### Գլուխ 4

### ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Հոդված 28. Հայկական ՍՍՀ-ն արտաքին-քաղաքական գործունեության մեջ ղեկավարվում է արտաքին քաղաքականության այն նպատակներով, խնդիրներով և սկզբունքներով, որոնք որոշված են ՍՍՀՄ Սահմանադրությամբ:

Հայկական ՍՍՀ-ում պատերազմի պրոպագանդան արգելվում է:

Հոդված 29. ՍՍՀՄ Սահմանադրությանը համապատասխան, սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը պետության կարևորագույն ֆունկցիաներից է և ամբողջ ժողովրդի գործն է:

Սոցիալիստական նվաճումները, սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքը, պետության սուվերենությունն ու տերիտորիալ ամբողջականությունը պաշտպանելու նպատակով ստեղծված են ՍՍՀՄ զինված ուժեր և սահմանված է ընդհանուր զինապարտություն:

Ժողովրդի հանդեպ ՍՍՀՄ զինված ուժերի պարտքն է՝ հուսալիորեն պաշտպանել սոցիալիստական հայրենիքը, լինել մշտական մարտական պատրաստության վիճակում, որը երաշխավորի անհապաղ հակահարված ամեն մի ագրեսորի:

Հոդված 30. Հայկական ՍՍՀ-ն մասնակցում է երկրի անվտանգության և պաշտպանունակության ապահովմանը, ՍՍՀՄ զինված ուժերը անհրաժեշտ ամեն ինչով հանդերձելուն:

Երկրի անվտանգության ապահովման և նրա պաշտպանունակության ամրապնդման ասպարեզում պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների, պաշտոնատար անձանց ու քաղաքացիների պարտականությունները որոշվում են ՍՍՀ Միության օրենսդրությամբ:

## II. ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՆՀԱՏԸ

### Գլուխ 5

### ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՔԱՂԱՔԱՑԻՈՒԹՅՈՒՆԸ: ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ԻՐԱՎԱՀԱՎԱՍԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Հոդված 31. ՍՍՀՄ-ում սահմանված միասնական միութենական քաղաքացիությանը համապատասխան, Հայկական ՍՍՀ յուրաքանչյուր քաղաքացի հանդիսանում է ՍՍՀՄ քաղաքացի:



Սովետական քաղաքացիություն ձեռք բերելու և այն կորցնելու հիմունքներն ու կարգը որոշվում են ՍՍՀՄ քաղաքացիության մասին օրենքով:

Միութենական մյուս հանրապետությունների քաղաքացիները Հայկական ՍՍՀ տերիտորիայում օգտվում են Հայկական ՍՍՀ քաղաքացիների բոլոր իրավունքներից:

Հայկական ՍՍՀ քաղաքացիները արտասահմանում օգտվում են սովետական պետության պաշտպանությունից ու հովանավորությունից:

Հոդված 32. Հայկական ՍՍՀ քաղաքացիները օրենքի առջև հավասար են անկախ ծագումից, սոցիալական և գույքային դրությունից, ռասայական և ազգային պատկանելությունից, սեռից, կրթությունից, լեզվից, կրոնի նկատմամբ վերաբերմունքից, զբաղմունքի տեսակից ու բնույթից, բնակության վայրից և այլ հանգամանքներից:

Հայկական ՍՍՀ քաղաքացիների իրավահավասարությունն ապահովվում է տնտեսական, քաղաքական, սոցիալական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում:

Հոդված 33. Հայկական ՍՍՀ-ում կինը և տղամարդը հավասար իրավունքներ ունեն:

Այդ իրավունքների իրականացումն ապահովվում է կանանց տալով տղամարդկանց հետ հավասար հնարավորություններ կրթություն և պրոֆեսիոնալ պատրաստություն ստանալու ասպարեզում, աշխատանքի, դրա վարձատրության և աշխատանքում առաջ քաշվելու, հասարակական-քաղաքական և կուլտուրական գործունեության ասպարեզում, ինչպես նաև կանանց աշխատանքի և առողջության պահպանության հատուկ միջոցառումներով, այնպիսի պայմանների ստեղծումով, որոնք կանանց թույլ են տալիս աշխատանքը զուգակցել մայրության հետ. մայրության և մանկության իրավական պաշտպանությամբ, նյութական ու բարոյական օժանդակությամբ, ներառյալ հղի կանանց ու մայրերին վճարովի արձակուրդներ և այլ արտոնություններ տալը, փոքրահասակ երեխաներ ունեցող կանանց աշխատաժամանակի աստիճանական կրճատումը:

Հոդված 34. Հայկական ՍՍՀ տարբեր ռասաների և ազգությունների քաղաքացիները ունեն հավասար իրավունքներ:

Այդ իրավունքների իրականացումն ապահովվում է ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների համակողմանի զարգացման ու մերձեցման քաղաքականությամբ, քաղաքացիներին սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակությամբ, մայրենի լեզվից և ՍՍՀՄ մյուս ժողովուրդների լեզուներից օգտվելու հնարավորությամբ:

Քաղաքացիների իրավունքների որևէ ուղղակի կամ անուղղակի սահմանափակում, ուղղակի կամ անուղղակի առավելությունների սահմանում ըստ ռասայական և ազգային հատկանիշների, ինչպես նաև ռասայական կամ ազգային բացառիկության, թշնամանքի կամ արհամարհանքի ամեն մի քարոզ պատժվում են օրենքով:

Հոդված 35. Օտարերկրյա քաղաքացիների և քաղաքացիություն չունեցող անձանց համար Հայկական ՍՍՀ-ում երաշխավորվում են օրենքով նախատեսված իրավունքներ ու ազատություններ, այդ թվում՝ նրանց պատկանող անձնական, գույքային, ընտանեկան և այլ իրավունքների պաշտպանության համար դատարան և պետական այլ մարմինների դիմելու իրավունք:

Հայկական ՍՍՀ տերիտորիայում գտնվող օտարերկրյա քաղաքացիները և քաղաքացիություն չունեցող անձինք պարտավոր են հարգել ՍՍՀՄ Սահմանադրությունը, Հայկական ՍՍՀ Սահմանադրությունը և պահպանել սովետական օրենքները:

Հոդված 36. Հայկական ՍՍՀ-ն ապաստանի իրավունք է վերապահում այն օտարերկրացիներին, որոնք հետապնդվում են աշխատավորների շահերի և խաղաղության գործի պաշտպանության համար, հեղափոխական և ազգային-ազատագրական շարժմանը մասնակցելու համար, հասարակական-քաղաքա-

կան, գիտական կամ այլ ստեղծագործական առաջադիմական գործունեության համար։

## Գլուխ 6

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԸ, ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հոդված 37. *Հայկական ՍՍՀ քաղաքացիներն ունեն ՍՍՀՄ Սահմանադրությամբ, Հայկական ՍՍՀ Սահմանադրությամբ և սովետական օրենքներով հռչակված ու երաշխավորվող սոցիալ-տնտեսական, քաղաքական և անձնական լիակատար իրավունքներն ու ազատությունները։ Սոցիալիստական կարգն ապահովում է իրավունքների և ազատությունների ընդլայնում, քաղաքացիների կենսապայմանների անընդհատ բարելավում՝ սոցիալ-տնտեսական և կուլտուրական զարգացման ծրագրերի կատարման համեմատ։*

*Քաղաքացիների կողմից իրավունքների և ազատությունների օգտագործումը չպետք է վնաս հասցնի հասարակության և պետության շահերին, մյուս քաղաքացիների իրավունքներին։*

Հոդված 38. *Հայկական ՍՍՀ քաղաքացիներն ունեն աշխատանքի իրավունք, այսինքն՝ ըստ աշխատանքի քանակի ու որակի և պետության սահմանած նվազագույն չափից ոչ ցածր վարձատրությամբ երաշխավորված աշխատանք ստանալու իրավունք, ներառյալ մասնագիտություն, զբաղմունքի և աշխատանքի տեսակ ընտրելու իրավունք՝ իրենց կոչմանը, ընդունակություններին, պրոֆեսիոնալ պատրաստությանը, կրթությանը համապատասխան և հաշվի առնելով հասարակական պահանջմունքները։*

*Այդ իրավունքն ապահովվում է տնտեսության սոցիալիստական սիստեմով, արտադրողական ուժերի անշեղ աճով, անվճար պրոֆեսիոնալ ուսուցմամբ, աշխատանքային որակավորման բարձրացմամբ և նոր մասնագիտությունների ուսուցմամբ, պրոֆեսիոնալ կողմնորոշման և աշխատանքի տեղավորման սիստեմների զարգացմամբ։*

Հոդված 39. *Հայկական ՍՍՀ քաղաքացիներն ունեն հանգստի իրավունք։*

*Այդ իրավունքն ապահովվում է բանվորների և ծառայողների համար 41 ժամը չգերազանցող աշխատանքային շաբաթի սահմանումով, մի շարք պրոֆեսիաների ու արտադրությունների համար կրճատ աշխատանքային օրով, գիշերային աշխատանքի կրճատ տևողությամբ. ամենամյա վճարովի արձակուրդներ, ամենշաբաթյա հանգստյան օրեր տալով, ինչպես նաև կուլտուր-լուսավորական և առողջարարական հիմնարկների ցանցի ընդլայնմամբ, մասսայական սպորտի, ֆիզիկական կուլտուրայի և տուրիզմի զարգացմամբ. բնակության վայրում հանգստի բարենպաստ հնարավորությունների և ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման այլ պայմանների ստեղծմամբ։*

*Կոլտնտեսականների աշխատաժամանակի և հանգստի տևողությունը կարգավորում են կոլտնտեսությունները։*

Հոդված 40. *Հայկական ՍՍՀ քաղաքացիներն ունեն առողջության պահպանության իրավունք։*

*Այդ իրավունքն ապահովվում է առողջապահության պետական հիմնարկների կողմից ցույց տրվող անվճար որակյալ բժշկական օգնությամբ. քաղաքացիների բուժման ու կազդուրման հիմնարկների ցանցի ընդլայնմամբ. անվտանգության տեխնիկայի և արտադրական սանիտարիայի զարգացմամբ ու կատարելագործմամբ. կանխարգելիչ լայն միջոցառումների իրականացմամբ. շրջակա միջավայրի առողջացման միջոցառումներով. աճող սերնդի առողջության նկատմամբ հատուկ հոգատարությամբ, ներառյալ երեխաների այնպիսի աշխատանքի արգելումը, որը կապված չէ ուսուցման և աշխատանքային դաստիարակության հետ. հիվանդացության կանխմանն ու նվազեցմանը, քաղաքացիների երկարամյա ակտիվ կյանքի ապահովմանն ուղղված գիտական հետազոտությունների ծավալմամբ։*



Հոդված 41. *Հայկական ՍՍՀ քաղաքացիներն ունեն նյութական ապահովության իրավունք ծերության ժամանակ, հիվանդության, աշխատունակության լրիվ կամ մասնակի կորստի, ինչպես նաև կերակրողին կորցնելու դեպքում։*

*Այդ իրավունքը երաշխավորվում է բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների սոցիալական ապահովագրությամբ, ժամանակավոր անաշխատունակության նպաստներով. պետության և կոլտնտեսությունների հաշվին տարիքային, հաշմանդամության և կերակրողին կորցնելու դեպքում կենսաթոշակներ վճարելով. աշխատունակությունը մասնակիորեն կորցրած քաղաքացիներին աշխատանքի տեղավորելով. զառամյալ քաղաքացիների և հաշմանդամների նկատմամբ հոգատարությամբ. սոցիալական ապահովության այլ ձևերով։*

Հոդված 42. *Հայկական ՍՍՀ քաղաքացիներն ունեն բնակարանի իրավունք։*

*Այդ իրավունքն ապահովվում է պետական և հանրային բնակարանային ֆոնդի զարգացմամբ ու պահպանմամբ, կոոպերատիվ և անհատական բնակարանային շինարարությանը ցույց տրվող օժանդակությամբ, բարեկարգ բնակարանների կառուցման ծրագրի իրականացման համեմատ հատկացվող բնակելի տարածությունը հասարակական վերահսկողության ներքո արդարացիորեն բաշխելով, ինչպես նաև բնակարանի և կոմունալ ծառայությունների ոչ բարձր վարձով։ Հայկական ՍՍՀ քաղաքացիները պետք է հոգատարությամբ վերաբերվեն իրենց հատկացված բնակարանին։*

Հոդված 43. *Հայկական ՍՍՀ քաղաքացիներն ունեն կրթության իրավունք։*

*Այդ իրավունքն ապահովվում է կրթության բոլոր տեսակների անվճարությամբ, երիտասարդության ընդհանուր պարտադիր միջնակարգ կրթության իրականացմամբ, կյանքի, արտադրության հետ ուսուցման կապի հիման վրա պրոֆեսիոնալ-տեխնիկական, միջնակարգ մասնագիտական և բարձրագույն կրթության լայն զարգացմամբ. հեռակա և երեկոյան կրթության զարգացմամբ. սովորողներին և ուսանողներին պետական կրթաթոշակներ և արտոնություններ տալով. դպրոցական դասագրքերի անվճար տրամադրմամբ. դպրոցում մայրենի լեզվով ուսուցման հնարավորությամբ. ինքնակրթության պայմանների ստեղծմամբ։*

Հոդված 44. *Հայկական ՍՍՀ քաղաքացիներն ունեն կուլտուրայի նվաճումներից օգտվելու իրավունք։*

*Այդ իրավունքն ապահովվում է պետական և հանրային ֆոնդերում գտնվող հայրենական և համաշխարհային կուլտուրայի արժեքների հանրամատչելիությամբ. հանրապետության տերիտորիայում կուլտուր-լուսավորական հիմնարկների զարգացմամբ և համաչափ տեղաբաշխմամբ. հեռուստատեսության և ռադիոյի, գրահրատարակչական գործի և պարբերական մամուլի, անվճար գրադարանային ցանցի զարգացմամբ. արտասահմանյան պետությունների հետ կուլտուրական փոխանակության ընդլայնմամբ։*

Հոդված 45. *Հայկական ՍՍՀ քաղաքացիների համար, կոմունիստական շինարարության նպատակներին համապատասխան, երաշխավորվում է գիտականտեխնիկական և գեղարվեստական ստեղծագործության ազատություն։ Դա ապահովվում է գիտական հետազոտությունների, գյուտարարական և ռացիոնալիզատորական գործունեության լայն ծավալմամբ, գրականության և արվեստի զարգացմամբ։ Պետությունը ստեղծում է դրա համար անհրաժեշտ նյութական պայմաններ, աջակցում է կամավոր ընկերություններին և ստեղծագործական միություններին, կազմակերպում է գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրումը ժողովրդական տնտեսության մեջ և կյանքի մյուս ոլորտներում։*

*Հեղինակների, գյուտարարների և ռացիոնալիզատորների իրավունքները պաշտպանվում են պետության կողմից։*

Հոդված 46. *Հայկական ՍՍՀ քաղաքացիներն ունեն պետական և հասարակական գործերի կառավարմանը, համապետական և տեղական նշանակության*

ունեցող օրենքների և որոշումների քննարկմանն ու ընդունմանը մասնակցելու իրավունք:

Այդ իրավունքն ապահովվում է ժողովրդական դեպուտատների սովետներ և այլ ընտրովի պետական մարմիններ ընտրելու և դրանցում ընտրվելու, համաժողովրդական քննարկումներին և քվեարկություններին, ժողովրդական վերահսկողությանը, պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների և հասարակական ինքնագործունեության մարմինների աշխատանքին, աշխատավորական կոլեկտիվների ժողովներին և ըստ բնակության վայրի գումարվող ժողովներին մասնակցելու հնարավորությամբ:

Հոդված 47. Հայկական ՍՍՀ յուրաքանչյուր քաղաքացի իրավունք ունի պետական մարմիններին և հասարակական կազմակերպություններին առաջարկություններ ներկայացնելու նրանց գործունեության բարելավման վերաբերյալ, քննադատելու աշխատանքի թերությունները:

Պաշտոնատար անձինք պարտավոր են սահմանված ժամկետներում քննության առնել քաղաքացիների առաջարկություններն ու դիմումները, պատասխան տալ դրանց և ձեռնարկել անհրաժեշտ միջոցներ:

Քննադատության համար հետապնդումն արգելվում է: Քննադատության համար հետապնդող անձինք ենթարկվում են պատասխանատվության:

Հոդված 48. Ժողովրդի շահերին համապատասխան և սոցիալիստական հասարակարգի ամրապնդման ու զարգացման նպատակով Հայկական ՍՍՀ քաղաքացիների համար երաշխավորվում են խոսքի, մամուլի, ժողովների, միտինգների, փողոցային երթերի և ցույցերի ազատություններ:

Քաղաքական այդ ազատությունների իրականացումն ապահովվում է աշխատավորներին և նրանց կազմակերպություններին հասարակական շենքեր, փողոցներ ու հրապարակներ տրամադրելով, ինֆորմացիայի լայն տարածմամբ, մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի օգտագործման հնարավորությամբ:

Հոդված 49. Կոմունիստական շինարարության նպատակներին համապատասխան, Հայկական ՍՍՀ քաղաքացիներն իրավունք ունեն միավորվելու իրենց քաղաքական ակտիվության և ինքնագործունեության զարգացմանը, բազմազան հետաքրքրությունների բավարարմանը նպաստող հասարակական կազմակերպությունների մեջ:

Հասարակական կազմակերպությունների համար երաշխավորվում են իրենց կանոնադրական խնդիրները հաջողությամբ կատարելու պայմաններ:

Հոդված 50. Հայկական ՍՍՀ քաղաքացիների համար երաշխավորվում է խղճի ազատություն, այսինքն՝ ցանկացած կրոնը դավանելու կամ ոչ մի կրոն չդավանելու, կրոնական պաշտամունքներ կատարելու կամ աթեիստական պրոպագանդա անելու իրավունք: Թշնամանքի և ատելության հրահրումը կրոնական հավատալիքների առնչությամբ արգելվում է:

Հայկական ՍՍՀ-ում եկեղեցին անջատված է պետությունից և դպրոցը՝ եկեղեցուց:

Հոդված 51. Ընտանիքը գտնվում է պետության պաշտպանության ներքո:

Ամուսնությունը հիմնվում է կնոջ և տղամարդու կամավոր համաձայնության վրա. ամուսինները լիովին իրավահավասար են ընտանեկան հարաբերություններում:

Պետությունը ընտանիքի մասին հոգ է տանում մանկական հիմնարկների լայն ցանցի ստեղծման ու զարգացման, կենցաղի ծառայության և հասարակական սննդի կազմակերպման ու կատարելագործման, երեխայի ծննդյան նպաստներ վճարելու, բազմազավակ ընտանիքներին նպաստներ և արտոնություններ, ինչպես նաև ընտանիքին այլ տեսակի նպաստներ տրամադրելու և օգնություն ցույց տալու միջոցով:

Հոդված 52. Հայկական ՍՍՀ քաղաքացիների համար երաշխավորվում է անձի անձեռնմխելիություն: Ոչ ոքի չի կարելի կալանքի ենթարկել այլ կերպ, քան դատարանի որոշմամբ կամ դատախազի սանկցիայով:

Հոդված 53. Հայկական ՍՍՀ քաղաքացիների համար երաշխավորվում է



բնակարանի անձեռնմխելիություն: Ոչ ոք իրավունք չունի առանց օրինական հիմքի բնակարան մտնել այնտեղ բնակվող անձանց կամքին հակառակ:

Հոդված 54. Քաղաքացիների անձնական կյանքը, նամակագրության, հեռախոսային խոսակցությունների և հեռագրական հաղորդումների գաղտնիությունը պաշտպանվում են օրենքով:

Հոդված 55. Քաղաքացիների անձի հարգումը, նրանց իրավունքների և ազատությունների պահպանումը բոլոր պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների և պաշտոնատար անձանց պարտականությունն է:

Հայկական ՍՍՀ քաղաքացիներն ունեն պատվի և արժանապատվության, կյանքի և առողջության, անձնական ազատության և գույքի դեմ ոտնձգություններից դատական պաշտպանության իրավունք:

Հոդված 56. Հայկական ՍՍՀ քաղաքացիները ունեն պաշտոնատար անձանց, պետական և հասարակական մարմինների գործողությունները գանգատարկելու իրավունք: Գանգատները պետք է քննության առնվեն օրենքով սահմանված կարգով և ժամկետներում:

Պաշտոնատար անձանց այն գործողությունները, որոնք կատարվել են օրենքի խախտմամբ, լիազորությունների սահմանազանցությամբ և սահմանափակում են քաղաքացիների իրավունքները, կարող են օրենքով սահմանված կարգով գանգատարկվել դատարանում:

Հայկական ՍՍՀ քաղաքացիներն ունեն պետական և հասարակական կազմակերպությունների, ինչպես նաև պաշտոնատար անձանց կողմից իրենց պաշտոնեական պարտականությունների կատարման ժամանակ ապօրինի գործողությունների հետևանքով պատճառված վնասի հատուցում ստանալու իրավունք:

Հոդված 57. Իրավունքների և ազատությունների իրականացումը անբաժանելի է քաղաքացու կողմից իր պարտականությունների կատարումից:

Հայկական ՍՍՀ քաղաքացին պարտավոր է պահպանել ՍՍՀՄ Սահմանադրությունը և Հայկական ՍՍՀ Սահմանադրությունը, սովետական օրենքները, հարգել սոցիալիստական համակեցության կանոնները, արժանապատվությամբ կրել ՍՍՀՄ քաղաքացու բարձր կոչումը:

Հոդված 58. Հայկական ՍՍՀ յուրաքանչյուր աշխատունակ քաղաքացու պարտականությունն ու պատվի գործն է բարեխղճորեն աշխատել հանրօգուտ գործունեության իր ընտրած բնագավառում, պահպանել աշխատանքային կարգապահությունը: Հանրօգուտ աշխատանքից խուսափելը անհամատեղելի է սոցիալիստական հասարակարգի սկզբունքների հետ:

Հոդված 59. Հայկական ՍՍՀ քաղաքացին պարտավոր է պահպանել և ամրապնդել սոցիալիստական սեփականությունը: Հայկական ՍՍՀ քաղաքացու պարտքն է պայքարել պետական և հանրային ունեցվածքի հափշտակումների և շռայլումների դեմ, հոգատարությամբ վերաբերվել ժողովրդական բարիքին:

Սոցիալիստական սեփականության դեմ ոտնձգություն կատարող անձինք պատժվում են օրենքով:

Հոդված 60. Հայկական ՍՍՀ քաղաքացին պարտավոր է պաշտպանել սովետական պետության շահերը, նպաստել նրա հզորության և հեղինակության ամրապնդմանը:

Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը Հայկական ՍՍՀ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է:

Հայրենիքին դավաճանելը ծանրագույն հանցագործություն է ժողովրդի հանդեպ:

Հոդված 61. ՍՍՀՄ զինված ուժերի շարքերում զինվորական ծառայությունը Հայկական ՍՍՀ քաղաքացիների պատվավոր պարտականությունն է:

Հոդված 62. Հայկական ՍՍՀ յուրաքանչյուր քաղաքացու պարտքն է հարգել մյուս քաղաքացիների ազգային արժանապատվությունը, ամրապնդել սովետական բազմազգ պետության ազգերի և ազգությունների բարեկամությունը:

Հոդված 63. Հայկական ՍՍՀ քաղաքացին պարտավոր է հարգել այլ անձանց իրավունքները և օրինական շահերը, անհաշտ լինել հակահասարակա-

կան արարքների նկատմամբ, ըստ ամենայնի աջակցել հասարակական կարգի
պահպանմանը:

Հոդված 64. Հայկական ՍՍՀ քաղաքացիները պարտավոր են հոգ տանել
երեխաների դաստիարակության մասին, նրանց պատրաստել հանրօգուտ աշ-
խատանքի, աճեցնել որպես սոցիալիստական հասարակության արժանավոր
անդամների: Զավակները պարտավոր են հոգ տանել ծնողների մասին և նրանց
օգնություն ցույց տալ:

Հոդված 65. Հայկական ՍՍՀ քաղաքացիները պարտավոր են հոգատարու-
թյամբ վերաբերվել բնությանը, պահպանել նրա հարստությունները:

Հոդված 66. Պատմական հուշարձանների և կուլտուրական մյուս արժեք-
ների պահպանության նկատմամբ հոգատարությունը Հայկական ՍՍՀ քաղաքա-
ցիների պարտքն ու պարտականությունն է:

Հոդված 67. Հայկական ՍՍՀ քաղաքացու ինտերնացիոնալ պարտքն է ա-
ջակցել մյուս երկրների ժողովուրդների հետ բարեկամության ու համագոր-
ծակցության զարգացմանը, ընդհանուր խաղաղության պահպանմանն ու ամ-
րապնդմանը:

# III. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԱԶԳԱՅԻՆ—ՊԵՏԱԿԱՆ ԵՎ ՎԱՐՉԱՏԵՐԻՏՈՐԻԱԼ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

## Գլուխ 7

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ-Ն ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ Է ՍՍՀՄ ԿԱԶՄՈՒՄ

Հոդված 68. Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությու-
նը սուվերեն սովետական սոցիալիստական պետություն է: Կոմունիստական
հասարակարգի հաջող կառուցման, երկրի տնտեսական և քաղաքական միաս-
նության ամրապնդման, անվտանգության և պաշտպանության ապահովման
նպատակով Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը,
իր ժողովրդի ազատ ինքնորոշման շնորհիվ, կամավորության և իրավահա-
վասարության հիման վրա Սովետական Սոցիալիստական Հանրապետություն-
ների՝

Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետու-
թյան, Ուկրաինական Սովետական Սոցիալիստական Հանրապետության, Բելո-
ռուսական Սովետական Սոցիալիստական Հանրապետության, Ուզբեկական Սո-
վետական Սոցիալիստական Հանրապետության, Ղազախական Սովետական
Սոցիալիստական Հանրապետության, Վրացական Սովետական Սոցիալիստա-
կան Հանրապետության, Ադրբեջանական Սովետական Սոցիալիստական Հան-
րապետության, Լիտվական Սովետական Սոցիալիստական Հանրապետու-
թյան, Մոլդավական Սովետական Սոցիալիստական Հանրապետության,
Լատվիական Սովետական Սոցիալիստական Հանրապետության, Կիրգի-
զական Սովետական Սոցիալիստական Հանրապետության, Տաջիկական Սովե-
տական Սոցիալիստական Հանրապետության, Թուրքմենական Սովետական
Սոցիալիստական Հանրապետության, Էստոնական Սովետական Սոցիալիստա-
կան Հանրապետության հետ միասին միավորվել է Սովետական Սոցիալիստա-
կան Հանրապետությունների Միության՝ միասնական միութենական բազմազգ
պետության մեջ:

Դրանից ելնելով, Հայկական ՍՍՀ-ն ՍՍՀ Միությանը՝ ի դեմս նրա պետա-
կան իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների, վերապահում
է ՍՍՀՄ Սահմանադրության 73 հոդվածով սահմանված իրավունքները:

ՍՍՀՄ Սահմանադրության 73 հոդվածում նշված սահմաններից դուրս Հայ-
կական ՍՍՀ-ն իր տերիտորիայում պետական իշխանությունը իրականացնում
է ինքնուրույն:



Հոդված 69. Հայկական ՍՍՀ-ն իրեն իրավունք է վերապահում ազատորեն
դուրս գալու ՍՍՀՄ-ից:

Հոդված 70. Հայկական ՍՍՀ տերիտորիան չի կարող փոփոխվել առանց
նրա համաձայնության: Հայկական ՍՍՀ և ուրիշ միութենական հանրապետու-
թյունների միջև սահմանները կարող են փոփոխվել՝ համապատասխան հանրա-
պետությունների փոխադարձ համաձայնությամբ, որը ենթակա է ՍՍՀ Միու-
թյան հաստատմանը:

Հոդված 71. Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության
տնօրինությանը, ի դեմս նրա պետական իշխանության և կառավարման բարձ-
րագույն մարմինների, ենթակա են՝

1) Հայկական ՍՍՀ Սահմանադրության ընդունումը և նրա մեջ փոփոխու-
թյուններ մտցնելը.

2) Հայկական ՍՍՀ Սահմանադրության պահպանման վերահսկողությունը.

3) Հայկական ՍՍՀ օրենսդրությունը.

4) պետական կարգի, քաղաքացիների իրավունքների և ազատությունների
պահպանությունը.

5 )պետական իշխանության և կառավարման հանրապետական ու տեղա-
կան մարմինների կազմակերպման և գործունեության կարգի սահմանումը.

6) միասնական սոցիալ-տնտեսական քաղաքականության կիրառումը,
Հայկական ՍՍՀ էկոնոմիկայի ղեկավարումը գիտատեխնիկական առաջադի-
մության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ու պահպանման
միջոցառումների ապահովումը.

7) Հայկական ՍՍՀ տնտեսական և սոցիալական զարգացման պետական
պլանների մշակումն ու հաստատումը. դրանց կատարման հաշվետվություննե-
րի հաստատումը. Հայկական ՍՍՀ պետական բյուջեի մշակումն ու հաստատու-
մը. դրա կատարման հաշվետվության հաստատումը. շրջանների և հանրապե-
տական ենթակայության քաղաքների բյուջեների իրականացման ղեկավա-
րումը.

8) ՍՍՀ Միության օրենսդրությանը համապատասխան, Հայկական ՍՍՀ
պետական բյուջեի գոյացման համար ստացվող եկամուտների սահմանումը.

9) Ժողովրդական տնտեսության միութենական-հանրապետական և հան-
րապետական ենթակայության միավորումների ու
ձեռնարկությունների ղեկավարումը.

10) Հողից, ընդերքից, անտառներից ու ջրերից օգտվելու կարգի սահմանու-
մը, շրջակա միջավայրի պահպանությունը.

11) բնակարանային և կոմունալ տնտեսության, բնակչության կենցաղա-
յին սպասարկման, քաղաքների և մյուս բնակավայրերի բնակարանային շինա-
րարության ու բարեկարգման, ճանապարհային շինարարության և տրանսպոր-
տի ղեկավարումը.

12) Հայկական ՍՍՀ ժողովրդական կրթության, կուլտուրայի և գիտական
կազմակերպությունների ու հիմնարկների, առողջապահության, ֆիզիկական
կուլտուրայի և սպորտի, սոցիալական ապահովության, պատմության և կուլ-
տուրայի հուշարձանների պահպանության և օգտագործման ղեկավարումը.

13) ամնիստիան և Հայկական ՍՍՀ դատարանների կողմից դատապարտ-
ված քաղաքացիների ներումը.

14) միջազգային հարաբերություններում Հայկական ՍՍՀ-ի ներկայացուց-
չության իրականացումը.

15) հանրապետական նշանակություն ունեցող այլ հարցերի լուծումը:

Հոդված 72. Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության
պետական լեզուն հայոց լեզուն է:

Հայկական ՍՍՀ-ն պետական հոգատարություն է իրականացնում հայոց
լեզվի ըստ ամենայնի զարգացման նկատմամբ և ապահովում է նրա գործա-
ծությունը պետական ու հասարակական մարմիններում, կուլտուրայի, լուսա-
վորության և այլ հիմնարկներում:

Հայկական ՍՍՀ-ում ապահովվում է այդ մարմիններում ու հիմնարկնե-

րում ռուսաց լեզվի և ուրիշ լեզուների ազատ գործածությունը, որոնցից օգտվում է բնակչությունը:

Այս կամ այն լեզվի գործածության որևէ արտոնություն կամ սահմանափակում չի թույլատրվում:

Հոդված 73. Հայկական ՍՍՀ-ն մասնակցում է ՍՍՀ Միության տնօրինությանը վերապահված հարցերի լուծմանը ՍՍՀՄ Գերագույն սովետում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում, ՍՍՀՄ կառավարությունում և ՍՍՀ Միության մյուս մարմիններում:

Հայկական ՍՍՀ-ն ապահովում է տնտեսական և սոցիալական կոմպլեքսային զարգացումը իր տերիտորիայում, նպաստում է այդ տերիտորիայում ՍՍՀ Միության լիազորությունների իրականացմանը, կենսագործում է ՍՍՀՄ պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների որոշումները:

Իր տնօրինությանը վերապահված հարցերում Հայկական ՍՍՀ-ն կոորդինացնում և վերահսկում է միութենական ենթակայության ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների գործունեությունը:

Հոդված 74. Հայկական ՍՍՀ-ն իրավունք ունի հարաբերությունների մեջ մտնել օտարերկրյա պետությունների հետ, կնքել նրանց հետ պայմանագրեր և փոխանակել դիվանագիտական ու հյուպատոսական ներկայացուցիչներ, մասնակցել միջազգային կազմակերպությունների գործունեությանը:

Հոդված 75. ՍՍՀՄ օրենքները Հայկական ՍՍՀ տերիտորիայում պարտադիր են:

Հոդված 76. Հայկական ՍՍՀ սուվերեն իրավունքները, ՍՍՀՄ Սահմանադրությանը համապատասխան, պահպանվում են ՍՍՀ Միության կողմից:

Գլուխ 8

### ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՎԱՐՉԱՏԵՐԻՏՈՐԻԱԼ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

Հոդված 77. Հայկական ՍՍՀ-ն սահմանում է իր շրջանային բաժանումը և լուծում վարչատերիտորիալ կառուցվածքի այլ հարցեր:

Հոդված 78. Հայկական ՍՍՀ-ում կան հետևյալ շրջանները՝ Աբովյանի, Ազիզբեկովի, Ախուրյանի, Ամասիայի, Անիի, Աշտարակի, Ապարանի, Արագածի, Արարատի, Արթիկի, Արտաշատի, Գորիսի, Գուգարքի, Եղեգնաձորի, Էջմիածնի, Թալինի, Թումանյանի, Իջևանի, Կալինինոյի, Կամոյի անվան, Կրասնոսելսկի, Հոկտեմբերյանի, Հրազդանի, Ղափանի, Ղուկասյանի, Մասիսի, Մարտունու, Մեղրու, Նաիրիի, Նոյեմբերյանի, Շամշադինի, Սիսիանի, Սպիտակի, Ստեփանավանի, Սևանի, Վարդենիսի և հանրապետական ենթակայության հետևյալ քաղաքները՝ Աբովյան, Ալավերդի, Արարատ, Արթիկ, Արտաշատ, Աշտարակ, Գորիս, Դիլիջան, Երևան, Էջմիածին, Իջևան, Լենինական, Կամո, Կիրովական, Հոկտեմբերյան, Հրազդան, Ղափան, Ջերմուկ, Սպիտակ, Ստեփանավան, Սևան:

## IV. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՍՈՎԵՏՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԸՆՏՐՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԸ

Գլուխ 9

### ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՍԻՍՏԵՄԸ ԵՎ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

Հոդված 79. Ժողովրդական դեպուտատների սովետները՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը, ժողովրդական դեպուտատների շրջանային, քաղաքային,



քաղաքների շրջանային, ավանային և գյուղական սովետները կազմում են պետական իշխանության մարմինների միասնական սիստեմ:

Հոդված 80. Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի լիազորությունների ժամկետը հինգ տարի է:

Ժողովրդական դեպուտատների տեղական սովետների լիազորությունների ժամկետը երկու և կես տարի է:

Ժողովրդական դեպուտատների սովետների ընտրությունները նշանակվում են ոչ ուշ, քան համապատասխան սովետների լիազորությունների ժամկետը լրանալուց երկու ամիս առաջ:

Հոդված 81. Ժողովրդական դեպուտատների համապատասխան սովետների տնօրինությանը վերապահված կարևորագույն հարցերը քննարկվում և լուծվում են նրանց նստաշրջաններում:

Ժողովրդական դեպուտատների սովետներն ընտրում են մշտական հանձնաժողովներ, ստեղծում գործադիր ու կարգադրիչ, ինչպես նաև նրանց հաշվետու այլ մարմիններ:

Հոդված 82. Ժողովրդական դեպուտատների սովետները կազմում են պետական վերահսկողությունը ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, հիմնարկներում և կազմակերպություններում աշխատավորների հասարակական վերահսկողության հետ զուգակցող ժողովրդական վերահսկողության մարմիններ:

Ժողովրդական վերահսկողության մարմինները վերահսկում են պետական պլանների և առաջադրանքների կատարումը, պայքար են մղում պետական կարգապահության խախտումների, տեղայնության, գործի նկատմամբ գերատեսչական մոտեցման դրսևորումների, անտնտեսվարության և շռայլության, քաշքշուկի և բյուրոկրատիզմի դեմ, նպաստում են պետական ապարատի աշխատանքի կատարելագործմանը:

Հոդված 83. Ժողովրդական դեպուտատների սովետները անմիջականորեն և իրենց կողմից ստեղծվող մարմինների միջոցով ղեկավարում են Հայկական ՍՍՀ պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության բոլոր ճյուղերը, ընդունում են որոշումներ, ապահովում դրանց կատարումը, իրականացնում որոշումների կենսագործման վերահսկողությունը:

Հոդված 84. Ժողովրդական դեպուտատների սովետների գործունեությունը կառուցվում է հարցերի կոլեկտիվ, ազատ, գործարար քննարկման և լուծման, հրապարակայնության, սովետների և բնակչության առջև գործադիր ու կարգադրիչ մարմինների, սովետների կողմից ստեղծվող մյուս մարմինների կանոնավոր հաշվետվության, նրանց աշխատանքին քաղաքացիներին լայնորեն մասնակից դարձնելու հիման վրա:

Ժողովրդական դեպուտատների սովետները և նրանց կողմից ստեղծվող մարմինները բնակչությանը սիստեմատիկաբար տեղյակ են պահում իրենց աշխատանքի և ընդունած որոշումների մասին:

Գլուխ 10

### ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

Հոդված 85. Ժողովրդական դեպուտատների բոլոր սովետներում դեպուտատների ընտրությունները կատարվում են ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ:

Հոդված 86. Դեպուտատների ընտրություններն ընդհանուր են. Հայկական ՍՍՀ 18 տարեկան դարձած բոլոր քաղաքացիները ունեն ընտրելու և ընտրվելու իրավունք, բացառությամբ օրենքով սահմանված կարգով խելագար ճանաչված անձանց:

Հոդված 87. Դեպուտատների ընտրությունները հավասար են. յուրաքանչյուր ընտրող ունի մեկ ձայն, բոլոր ընտրողները ընտրություններին մասնակցում են հավասար հիմունքներով:

*Հոդված* 88. *Դեպուտատների ընտրություններն ուղղակի են. ժողովրդական դեպուտատների բոլոր սովետների դեպուտատները քաղաքացիների կողմից ընտրվում են անմիջականորեն։*

*Հոդված* 89. *Դեպուտատների ընտրությունների ժամանակ քվեարկությունը գաղտնի է. ընտրողների կամքի արտահայտման նկատմամբ վերահսկողություն չի թույլատրվում։*

*Հոդված* 90. *Դեպուտատության թեկնածուներ առաջադրելու իրավունքը պատկանում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության, արհեստակցական միությունների, համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միության կազմակերպություններին, կոոպերատիվ և մյուս հասարակական կազմակերպություններին, աշխատավորական կոլեկտիվներին, ինչպես նաև զինծառայողների ժողովներին՝ ըստ զորամասերի։*

*Հայկական ՍՍՀ քաղաքացիների և հասարակական կազմակերպությունների համար երաշխավորվում է դեպուտատության թեկնածուների քաղաքական, գործարար և անձնական հատկանիշների ազատ ու համակողմանի քննարկում, ինչպես նաև ժողովներում, մամուլում, հեռուստատեսությամբ, ռադիոյով ագիտացիա մղելու իրավունք։*

*Ժողովրդական դեպուտատների սովետների ընտրությունների անցկացման հետ կապված ծախսերը կատարվում են պետության հաշվին։*

*Հոդված* 91. *Ժողովրդական դեպուտատների սովետների դեպուտատների ընտրությունները կատարվում են ըստ ընտրական օկրուգների։*

*Հայկական ՍՍՀ քաղաքացին, որպես կանոն, չի կարող ընտրվել ժողովրդական դեպուտատների ավելի քան երկու սովետում։*

*Սովետների ընտրությունների անցկացումը ապահովում են ընտրական հանձնաժողովները, որոնք կազմվում են հասարակական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների և զինծառայողների ժողովների ներկայացուցիչներից՝ ըստ զորամասերի։*

*Ժողովրդական դեպուտատների սովետների ընտրությունների անցկացման կարգը սահմանվում է ՍՍՀ Միության և Հայկական ՍՍՀ օրենքներով։*

*Հոդված* 92. *Ընտրողները պատվիրաններ են տալիս իրենց դեպուտատներին։*

*Ժողովրդական դեպուտատների համապատասխան սովետները քննության են առնում ընտրողների պատվիրանները, դրանք հաշվի առնում տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները մշակելիս և բյուջեն կազմելիս, կազմակերպում են պատվիրանների կատարումը և քաղաքացիներին տեղյակ պահում դրանց իրականացման մասին։*

## Գլուխ 11

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՊՈՒՏԱՏԸ

*Հոդված* 93. *Դեպուտատները ժողովրդի լիազոր ներկայացուցիչներն են ժողովրդական դեպուտատների սովետներում։*

*Մասնակցելով սովետների աշխատանքին, դեպուտատները լուծում են պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության հարցեր, կազմակերպում սովետների որոշումների կենսագործումը, վերահսկողություն իրականացնում պետական մարմինների, ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների աշխատանքի նկատմամբ։*

*Դեպուտատը իր գործունեության մեջ ղեկավարվում է համապետական շահերով, հաշվի է առնում ընտրական օկրուգի բնակչության պահանջները, հետամուտ է լինում ընտրողների պատվիրանների կենսագործմանը։*

*Հոդված* 94. *Դեպուտատը իր լիազորություններն իրականացնում է՝ չկտրվելով արտադրական կամ ծառայական գործունեությունից։*

*Սովետի նստաշրջանների ժամանակ, ինչպես նաև օրենքով նախատեսված այլ դեպքերում դեպուտատական լիազորությունների իրականացման համար*



*դեպուտատը ազատվում է արտադրական կամ ծառայական պարտականությունների կատարումից՝ մշտական աշխատանքի վայրում նրա միջին վաստակի պահպանումով։*

*Հոդված* 95. *Դեպուտատը իրավունք ունի հարցապնդում անելու համապատասխան պետական մարմիններին ու պաշտոնատար անձանց, որոնք պարտավոր են պատասխան տալ հարցապնդմանը սովետի նստաշրջանում։*

*Դեպուտատը իրավունք ունի դեպուտատական գործունեության հարցերով դիմելու պետական ու հասարակական բոլոր մարմիններին, ձեռնարկություններին, հիմնարկներին, կազմակերպություններին և մասնակցելու իր առաջադրած հարցերի քննարկմանը։ Համապատասխան պետական ու հասարակական մարմինների, ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների ղեկավարները պարտավոր են անհետաձգելիորեն ընդունել դեպուտատին և քննության առնել նրա առաջարկությունները սահմանված ժամկետներում։*

*Հոդված* 96. *Դեպուտատի համար ապահովվում են նրա իրավունքներն ու պարտականությունները անարգել և արդյունավետ իրականացնելու պայմաններ։*

*Դեպուտատների անձեռնմխելիությունը, ինչպես նաև դեպուտատական գործունեության մյուս երաշխիքները սահմանվում են դեպուտատների ստատուսի մասին օրենքով և ՍՍՀ Միության ու Հայկական ՍՍՀ այլ օրենսդրական ակտերով։*

*Հոդված* 97. *Դեպուտատը պարտավոր է իր աշխատանքի և սովետի աշխատանքի մասին հաշվետու լինել ընտրողների առջև, ինչպես նաև իրեն դեպուտատության թեկնածու առաջադրած կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների առջև։*

*Ընտրողների վստահությունը չարդարացրած դեպուտատը ցանկացած ժամանակ կարող է ետ կանչվել ընտրողների մեծամասնության որոշմամբ՝ օրենքով սահմանված կարգով։*

# V. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ

## Գլուխ 12

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԸ

*Հոդված* 98. *Հայկական ՍՍՀ պետական իշխանության բարձրագույն մարմինը Հայկական ՍՍՀ Գերագույն սովետն է։*

*Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը իրավազոր է լուծելու ՍՍՀՄ Սահմանադրությամբ և Հայկական ՍՍՀ Սահմանադրությամբ Հայկական ՍՍՀ տնօրինությանը վերապահված բոլոր հարցերը։*

*Հայկական ՍՍՀ Սահմանադրության ընդունումը, նրա մեջ փոփոխություններ մտցնելը, Հայկական ՍՍՀ տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանների, Հայկական ՍՍՀ պետական բյուջեի և դրանց կատարման հաշվետվությունների հաստատումը. իրեն հաշվետու՝ Հայկական ՍՍՀ մարմինների կազմումը իրականացվում են բացառապես Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի կողմից։*

*Հայկական ՍՍՀ օրենքներն ընդունվում են Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի կողմից կամ ժողովրդական քվեարկությամբ(ռեֆերենդումով), որն անցկացվում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի որոշմամբ։*

*Հոդված* 99. *Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը կազմված է 340 դեպուտատներից, որոնք ընտրվում են ըստ հավասար թվով բնակչություն ունեցող ընտրական օկրուգների։*

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը իր կողմից ընտրվող մանդատային հանձնաժողովի առաջարկմամբ որոշում է ընդունում դեպուտատների լիազորությունները ճանաչելու մասին, իսկ ընտրությունների օրենսդրության խախտման դեպքում՝ առանձին դեպուտատների ընտրությունները անվավեր ճանաչելու մասին։

**Հոդված 100.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը ընտրում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահ և նրա երեք տեղակալներ։

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահը ղեկավարում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նիստերը և տնօրինում նրա ներքին կարգուկանոնը։

**Հոդված 101.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նստաշրջանները գումարվում են տարեկան երկու անգամ։

Արտահերթ նստաշրջանները գումարվում են Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության կողմից՝ իր նախաձեռնությամբ, ինչպես նաև Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատների առնվազն մեկ երրորդի առաջարկությամբ։

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նստաշրջանը բաղկացած է նրա նիստերից, ինչպես նաև դրանց միջև ընկած ժամանակամիջոցում անցկացվող՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի մշտական կամ այլ հանձնաժողովների նիստերից։

**Հոդված 102.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետում օրենսդրական նախաձեռնության իրավունքը պատկանում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահությանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի մշտական հանձնաժողովներին և մյուս հանձնաժողովներին, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատներին, Հայկական ՍՍՀ Գերագույն դատարանին, Հայկական ՍՍՀ դատախազին։

Օրենսդրական նախաձեռնության իրավունք ունեն նաև հասարակական կազմակերպությունները՝ ի դեմս նրանց հանրապետական մարմինների։

**Հոդված 103.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի քննարկմանը մտցված օրենքների նախագծերը և մյուս հարցերը քննության են առնվում նրա նիստերում։ Անհրաժեշտության դեպքում օրենքի նախագիծը կամ համապատասխան հարցը կարող է նախնական կամ լրացուցիչ քննարկման հանձնվել մեկ կամ մի քանի հանձնաժողովների։

Հայկական ՍՍՀ օրենքները, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի որոշումները և մյուս ակտերը ընդունված են համարվում, եթե դրանց օգտին քվեարկել է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատների ընդհանուր թվի մեծամասնությունը։

Հայկական ՍՍՀ օրենքների նախագծերը և հանրապետության պետական կյանքի այլ կարևոր հարցեր Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի կամ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության որոշմամբ կարող են հանձնվել ժողովրդական քննարկման։

**Հոդված 104.** Հայկական ՍՍՀ օրենքները, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի որոշումները և մյուս ակտերը հրապարակվում են հայերեն, ռուսերեն և ադրբեջաներեն լեզուներով՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության Նախագահի և քարտուղարի ստորագրություններով։

**Հոդված 105.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատը իրավունք ունի հարցապնդումով դիմելու Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին, մինիստրներին և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի կողմից կազմվող մյուս մարմինների ղեկավարներին, ինչպես նաև Հայկական ՍՍՀ տերիտորիայում գտնվող միութենական ենթակայության ձեռնարկությունների, հիմնարկների ու կազմակերպությունների ղեկավարներին՝ Հայկական ՍՍՀ տնօրինությանը վերապահված հարցերով։ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը կամ այն պաշտոնատար անձը, որին ուղղված է հարցապնդումը, պարտավոր է բանավոր կամ գրավոր պատասխան տալ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի տվյալ նստաշրջանում։



**Հոդված 106.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատին չի կարելի քրեական պատասխանատվության կանչել, կալանավորել, կամ ենթարկել դատական կարգով նշանակվող վարչական տույժի միջոցների, առանց Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի համաձայնության, իսկ նրա նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում՝ առանց Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության համաձայնության։

**Հոդված 107.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը ընտրում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահություն՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի մշտապես գործող մարմին, որը նրան հաշվետու է իր ամբողջ գործունեության համար և Սահմանադրությամբ նախատեսված շրջանակներում իրականացնում է Հայկական ՍՍՀ պետական իշխանության բարձրագույն մարմնի ֆունկցիաները նրա նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում։

**Հոդված 108.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահությունը ընտրվում է դեպուտատների թվից, հետևյալ կազմով՝ Գերագույն սովետի Նախագահության Նախագահ, Նախագահի երկու տեղակալներ, Նախագահության քարտուղար և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության տասնհինգ անդամ։

**Հոդված 109.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահությունը՝

1) նշանակում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և ժողովրդական դեպուտատների տեղական սովետների ընտրությունները.

2) գումարում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նստաշրջանները.

3) կոորդինացնում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի մշտական հանձնաժողովների գործունեությունը.

4) իրականացնում է Հայկական ՍՍՀ Սահմանադրության պահպանման վերահսկողությունը.

5) նշանակում է շրջանային (քաղաքային) ժողովրդական դատարանների ընտրությունները.

6) մեկնաբանում է Հայկական ՍՍՀ օրենքները.

7) իրականացնում է ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործունեության ղեկավարումը.

8) սահմանում է Հայկական ՍՍՀ վարչատերիտորիալ կառուցվածքին վերաբերող հարցերի լուծման կարգը. որոշում և փոփոխում է շրջանների ու քաղաքների սահմանները. կազմում է շրջաններում քաղաքներ և քաղաքներում՝ շրջաններ, սահմանում է քաղաքների ենթակայությունը. կատարում է շրջաններում քաղաքների և քաղաքներում՝ շրջանների, ավանների և մյուս բնակավայրերի վերանվանում.

9) վերացնում է Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշումներն ու կարգադրությունները, ժողովրդական դեպուտատների շրջանային և հանրապետական ենթակայության քաղաքների քաղաքային սովետների որոշումները՝ դրանք օրենքին չհամապատասխանելու դեպքում.

10) սահմանում և շնորհում է Հայկական ՍՍՀ պատվավոր կոչումներ, պարգևատրում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության պատվոգրով.

11) ընդունում է Հայկական ՍՍՀ քաղաքացիության մեջ, լուծում է ապաստան տալու հարցերը.

12) իրականացնում է Հայկական ՍՍՀ դատարանների կողմից դատապարտված քաղաքացիների ներումը.

13) վավերացնում և դենոնսացնում է Հայկական ՍՍՀ միջազգային պայմանագրերը.

14) նշանակում և ետ է կանչում օտարերկրյա պետություններում և միջազգային կազմակերպություններին առընթեր Հայկական ՍՍՀ դիվանագիտական ներկայացուցիչներին.

15) ընդունում է օտարերկրյա պետությունների՝ իրեն առընթեր հավատարմագրված դիվանագիտական ներկայացուցիչների հավատարմագրերը և ետ կանչման գրերը.

16) իրականացնում է Հայկական ՍՍՀ Սահմանադրությամբ և օրենքներով սահմանված այլ լիազորություններ:

**Հոդված 110.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը Գերագույն սովետի նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում, այնուհետև հերթական նստաշրջանում նրա հաստատմանը ներկայացնելով՝

1) անհրաժեշտության դեպքում փոփոխություններ է մտցնում Հայկական ՍՍՀ գործող օրենսդրական ակտերի մեջ.

2) կազմում է շրջաններ և հանրապետական ենթակայության քաղաքներ.

3) Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի առաջարկությամբ կազմում և վերացնում է Հայկական ՍՍՀ մինիստրություններն ու պետական կոմիտեները.

4) Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջադրմամբ պաշտոնից ազատում և նշանակում է Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի կազմի մեջ մտնող առանձին անձանց:

**Հոդված 111.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը հրատարակում է հրամանագրեր և ընդունում որոշումներ:

**Հոդված 112.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի լիազորությունները լրանալուց հետո Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը պահպանում է իր լիազորությունները ընդհուպ մինչև Հայկական ՍՍՀ նորընտիր Գերագույն սովետի կողմից նոր նախագահություն կազմվելը:

Հայկական ՍՍՀ նորընտիր Գերագույն սովետը գումարվում է Հայկական ՍՍՀ նախկին կազմի Գերագույն սովետի նախագահության կողմից, ոչ ուշ, քան ընտրություններից երկու ամիս հետո:

**Հոդված 113.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատների թվից ընտրում է մշտական հանձնաժողովներ՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի տնօրինությանը վերաբերող հարցերի նախնական քննարկման ու նախապատրաստման համար, ինչպես նաև Հայկական ՍՍՀ օրենքների և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի ու նրա նախագահության այլ որոշումների կենսագործմանն աջակցելու, պետական մարմինների ու կազմակերպությունների գործունեությունը վերահսկելու համար:

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը, երբ անհրաժեշտ է գտնում, ցանկացած հարցի առթիվ ստեղծում է քննչական, վերստուգիչ և այլ հանձնաժողովներ:

Պետական և հասարակական բոլոր մարմինները, կազմակերպությունները և պաշտոնատար անձինք պարտավոր են կատարել Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի հանձնաժողովների պահանջները, նրանց ներկայացնել անհրաժեշտ նյութեր և փաստաթղթեր:

Հանձնաժողովների հանձնարարականները ենթակա են պարտադիր քննարկման պետական ու հասարակական մարմինների, հիմնարկների և կազմակերպությունների կողմից: Քննարկման արդյունքների կամ ձեռնարկված միջոցների մասին պետք է հաղորդվի հանձնաժողովներին՝ սահմանված ժամկետում:

**Հոդված 114.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը վերահսկողություն է իրականացնում իրեն հաշվետու բոլոր պետական մարմինների գործունեության նկատմամբ:

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը կազմում է Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտե, որը գլխավորում է ժողովրդական վերահսկողության մարմինների սիստեմը:

**Հոդված 115.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և նրա մարմինների գործունեության կարգը որոշվում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի ռեգլամենտով և Հայկական ՍՍՀ Սահմանադրության հիման վրա հրատարակվող Հայկական ՍՍՀ մյուս օրենքներով:



Գլուխ 13

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴԸ

**Հոդված 116.** Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը՝ Հայկական ՍՍՀ կառավարությունը, Հայկական ՍՍՀ պետական իշխանության բարձրագույն գործադիր և կարգադրիչ մարմինն է:

**Հոդված 117.** Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը կազմվում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի կողմից, հետևյալ կազմով՝ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ, նախագահի առաջին տեղակալ և տեղակալներ, Հայկական ՍՍՀ մինիստրներ, Հայկական ՍՍՀ պետական կոմիտեների նախագահներ:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջադրմամբ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը կարող է Հայկական ՍՍՀ կառավարության կազմի մեջ մտցնել Հայկական ՍՍՀ այլ մարմինների և կազմակերպությունների ղեկավարների:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը իր լիազորությունները վայր է դնում Հայկական ՍՍՀ նորընտիր Գերագույն սովետի առջև նրա առաջին նստաշրջանում:

**Հոդված 118.** Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը պատասխանատու է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի առջև և հաշվետու է նրան, իսկ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության առջև, որին հաշվետու է:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը իր աշխատանքի մասին կանոնավոր կերպով հաշվետու է լինում Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի առջև:

**Հոդված 119.** Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը իրավազոր է լուծելու պետական կառավարման՝ Հայկական ՍՍՀ տնօրինությանը վերապահված բոլոր հարցերը, որքանով դրանք, Սահմանադրության համաձայն, չեն մտնում Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության իրավասության մեջ:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը իր լիազորությունների սահմաններում՝

1) ապահովում է ժողովրդական տնտեսության և սոցիալ-կուլտուրական շինարարության ղեկավարումը, մշակում և իրականացնում է միջոցառումներ ժողովրդի բարեկեցության և կուլտուրայի աճն ապահովելու, գիտությունն ու տեխնիկան զարգացնելու, բնական ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու և պահպանելու ասպարեզում. օժանդակում է դրամական և վարկային սիստեմի ամրապնդման, պետական ապահովագրության և հաշվառման ու վիճակագրության միասնական սիստեմի կազմակերպման միջոցառումների իրագործմանը. մասնակցում է գների, աշխատանքի վարձատրության, սոցիալական ապահովության միասնական քաղաքականության կիրառմանը, կազմակերպում է արդյունաբերական, շինարարական, գյուղատնտեսական ձեռնարկությունների ու միավորումների, տրանսպորտի և կապի ձեռնարկությունների, ինչպես նաև հանրապետական ենթակայության այլ կազմակերպությունների ու հիմնարկների կառավարումը.

2) մշակում և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետ է մտցնում Հայկական ՍՍՀ տնտեսական և սոցիալական զարգացման ընթացիկ ու հեռանկարային պետական պլանները, Հայկական ՍՍՀ պետական բյուջեն, միջոցներ է ձեռնարկում պետական պլանների և բյուջեի կատարման ուղղությամբ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետին հաշվետվություններ է ներկայացնում պլանների և բյուջեի կատարման մասին, կոորդինացնում և վերահսկում է միութենական ենթակայության ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների գործունեությունը՝ Հայկական ՍՍՀ տնօրինությանը վերաբերող հարցերով.

3) միջոցառումներ է իրականացնում պետության շահերը պաշտպանելու,

սովետի տերիտորիայում գտնվող բոլոր ձեռնարկությունների, հիմնարկների ու կազմակերպությունների, ինչպես նաև պաշտոնատար անձանց ու քաղաքացիների կողմից։

Հոդված 129. *Ժողովրդական դեպուտատների տեղական սովետների նստաշրջանները գումարվում են նրանց գործադիր կոմիտեների կողմից, տարեկան ոչ պակաս, քան չորս անգամ։*

*Ժողովրդական դեպուտատների տեղական սովետները իրավազոր են նստաշրջաններում քննարկելու և լուծելու ՍՍՀ Միության և Հայկական ՍՍՀ օրենսդրությամբ իրենց տնօրինությանը վերապահված ամեն մի հարց։ Բացառապես նստաշրջաններում քննարկվող և լուծվող հարցերի ցանկը սահմանվում է ժողովրդական դեպուտատների տեղական սովետների մասին օրենքներով։*

Հոդված 130. *Ժողովրդական դեպուտատների տեղական սովետները դեպուտատների թվից ընտրում են մշտական հանձնաժողովներ տեղական սովետների տնօրինությանը վերաբերող հարցերի նախնական քննարկման ու նախապատրաստման համար, ինչպես նաև սովետների որոշումների կենսագործմանը օժանդակելու, պետական մարմինների, ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների գործունեությունը վերահսկելու համար։*

*Տեղական սովետների մշտական հանձնաժողովների հանձնարարականները ենթակա են պարտադիր քննարկման համապատասխան պետական ու հասարակական մարմինների, ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների կողմից։ Քննարկման արդյունքների կամ ձեռնարկված միջոցառումների մասին պետք է սահմանված ժամկետում հաղորդվի հանձնաժողովին։*

Հոդված 131. *Վերադաս տեղական սովետներն իրավունք ունեն վերացնելու ստորադաս սովետների և նրանց գործադիր կոմիտեների ակտերը՝ այդ ակտերը օրենքներին չհամապատասխանելու դեպքում։*

Հոդված 132. *Ժողովրդական դեպուտատների տեղական սովետներն իրենց գործունեությունը իրականացնում են՝ սերտորեն կապված հասարակական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների հետ, առավել կարևոր հարցերը ներկայացնում են քաղաքացիների քննարկմանը. նրանց ներգրավում մշտական հանձնաժողովների, գործադիր կոմիտեների և սովետների առջև հաշվետու մյուս մարմինների աշխատանքում, ուղղություն են տալիս տեղական կամավոր ընկերությունների աշխատանքին և զարգացնում բնակչության հասարակական ինքնագործունեությունը։*

### Գլուխ 15

### ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԳՈՐԾԱԴԻՐ ԿՈՄԻՏԵՆԵՐԸ

Հոդված 133. *Ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր և կարգադրիչ մարմինները նրանց կողմից դեպուտատների թվից ընտրվող գործադիր կոմիտեներն են, կազմված նախագահից, նախագահի տեղակալներից, քարտուղարից և անդամներից։*

*Գործադիր կոմիտեները ոչ պակաս, քան տարեկան մեկ անգամ հաշվետու են լինում իրենց ընտրող սովետների առջև, ինչպես նաև աշխատավորական կոլեկտիվների ժողովներում և ըստ քաղաքացիների բնակության վայրի գումարվող ժողովներում։*

*Ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր կոմիտեներն անմիջականորեն հաշվետու են ինչպես իրենց ընտրող սովետին, այնպես էլ վերադաս գործադիր և կարգադրիչ մարմնին։*

Հոդված 134: *Ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր կոմիտեները ղեկավարում են պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարությունը համապատասխան սովետի տերիտորիայում՝ իրենց ընտրող սովետների և պետական իշխանության ու կառավարման վերադաս մարմինների որոշումների հիման վրա։*



*Գործադիր կոմիտեները գումարում են սովետների նստաշրջանները, կոորդինացնում են սովետների մշտական հանձնաժողովների աշխատանքը, կազմակերպում են սովետների և վերադաս պետական մարմինների որոշումների, ինչպես նաև ընտրողների պատվիրանների կատարումը, ղեկավարում են կառավարման իրենց ենթակա մարմինները։*

Հոդված 135. *Ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր կոմիտեները իրենց իրավասության սահմաններում ընդունում են որոշումներ և կարգադրություններ։*

*Ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր կոմիտեներն իրավունք ունեն վերացնելու ստորադաս սովետների գործադիր կոմիտեների որոշումներն ու կարգադրությունները։*

Հոդված 136. *Ժողովրդական դեպուտատների տեղական սովետների լիազորությունները լրանալուց հետո գործադիր կոմիտեները պահպանում են իրենց լիազորություններն ընդհուպ մինչև ժողովրդական դեպուտատների նոր գումարման սովետների կողմից գործադիր կոմիտեներ ընտրելը։*

Հոդված 137. *Պետական կառավարման առանձին ճյուղերի անմիջական ղեկավարման համար ժողովրդական դեպուտատների շրջանային, քաղաքային և քաղաքների շրջանային սովետները կազմում են գործադիր կոմիտեների բաժիններ և վարչություններ։*

*Բաժինների և վարչությունների ցանկը և դրանք կազմելու կարգը որոշվում են ՍՍՀ Միության և Հայկական ՍՍՀ օրենսդրությամբ։*

*Ժողովրդական դեպուտատների շրջանային, քաղաքային և քաղաքների շրջանային սովետների գործադիր կոմիտեների բաժինները և վարչությունները իրենց գործունեության մեջ ենթարկվում են ինչպես սովետներին և նրանց գործադիր կոմիտեներին, այնպես էլ վերադաս գործադիր ու կարգադրիչ մարմնին։*

## VII. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԸ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

### Գլուխ 16

### ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԸ

Հոդված 138. *Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանը ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման միասնական պետական պլանի բաղկացուցիչ մասն է։*

*Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման հեռանկարային ու ընթացիկ պլանները մշակվում են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական խնդիրներին և ուղղություններին համապատասխան և ուղղված են հանրապետության տերիտորիայում կոմպլեքսային տնտեսական ու սոցիալական զարգացման ապահովմանը։*

Հոդված 139. *Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանը սահմանում է էկոնոմիկայի և սոցիալ-կուլտուրական շինարարության բնագավառի խնդիրները, բովանդակում է Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության ճյուղերի զարգացման կոմպլեքսային ծրագրերը, ներառում է մինիստրությունների, պետական կոմիտեների և պետական կառավարման մյուս մարմինների պլանները, շրջանների և հանրապետական ենթակայության քաղաքների տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները։*

Հոդված 140. Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանը մշակում է Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը՝ ելնելով համապետական շահերից, հաշվի առնելով Հայկական ՍՍՀ մինիստրությունների, պետական կոմիտեների և պետական կառավարման մյուս մարմինների, ժողովրդական դեպուտատների տեղական սովետների, հասարակական կազմակերպությունների, ձեռնարկությունների և հիմնարկների կոլեկտիվների, ինչպես նաև ՍՍՀՄ մինիստրությունների ու գերատեսչությունների առաջարկությունները, և մտցնում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետ։

Հոդված 141. Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի զեկուցմամբ և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պլանային-բյուջետային և մյուս մշտական հանձնաժողովների եզրակացություններով, քննարկում և հաստատում է Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանը։

Հոդված 142. Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը կազմակերպում է Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանի կատարումը և անհրաժեշտ միջոցներ է ձեռնարկում ժողովրդական տնտեսության մեջ պլանային կարգապահությունն ամրապնդելու ուղղությամբ։

Հոդված 143. Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանների կատարման հաշվետվությունները քննարկվում ու հաստատվում են Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի կողմից։ Պլանների կատարման ընդհանուր ցուցանիշները հրապարակվում են ի գիտություն բոլորի։

### Գլուխ 17

### ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

Հոդված 144. Հայկական ՍՍՀ պետական բյուջեն ՍՍՀՄ միասնական պետական բյուջեի բաղկացուցիչ մասն է։

Հոդված 145. Հայկական ՍՍՀ պետական բյուջեն միավորում է Հայկական ՍՍՀ հանրապետական բյուջեն և տեղական բյուջեները։

Հոդված 146. Հայկական ՍՍՀ պետական բյուջեի եկամուտների և ծախսերի սահմանազատումը հանրապետական բյուջեի և տեղական բյուջեների միջև որոշվում է Հայկական ՍՍՀ և ժողովրդական դեպուտատների տեղական սովետների բյուջետային իրավունքների մասին օրենքով և Հայկական ՍՍՀ մյուս օրենսդրական ակտերով։

Հոդված 147. Հայկական ՍՍՀ պետական բյուջեն կազմում է Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանների, ՍՍՀՄ պետական բյուջեի հիման վրա և ներկայացնում Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի հաստատմանը։

Հայկական ՍՍՀ պետական բյուջեն Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը քննության է առնում Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի զեկուցմամբ և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պլանային-բյուջետային ու մյուս մշտական հանձնաժողովների եզրակացություններով։

Հոդված 148. Հայկական ՍՍՀ պետական բյուջեի կատարման հաշվետվությունը հաստատում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը։ Բյուջեի կատարման ընդհանուր ցուցանիշները հրապարակվում են ի գիտություն բոլորի։

# VIII. ԱՐԴԱՐԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ, ԱՐԲԻՏՐԱԺԸ ԵՎ ԴԱՏԱԽԱԶԱԿԱՆ ՀՍԿՈՂՈՒԹՅՈՒՆԸ

### Գլուխ 18

### ԴԱՏԱՐԱՆԸ ԵՎ ԱՐԲԻՏՐԱԺԸ

Հոդված 149. Հայկական ՍՍՀ-ում արդարադատությունը իրականացնում է միայն դատարանը։



Հայկական ՍՍՀ դատարաններն են Հայկական ՍՍՀ գերագույն դատարանը, շրջանային (քաղաքային) ժողովրդական դատարանները։

Հայկական ՍՍՀ դատարանների կազմակերպումը և գործունեության կարգը որոշվում են ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ օրենքներով։

Հոդված 150. Հայկական ՍՍՀ-ում բոլոր դատարանները կազմվում են դատավորների և ժողովրդական ատենակալների ընտրովիության հիմունքներով։

Շրջանային (քաղաքային) ժողովրդական դատարանների ժողովրդական դատավորներն ընտրվում են շրջանի (քաղաքի) քաղաքացիների կողմից ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ, հինգ տարի ժամանակով։ Շրջանային (քաղաքային) ժողովրդական դատարանների ժողովրդական ատենակալներն ընտրվում են քաղաքացիների ժողովներում՝ ըստ նրանց աշխատանքի կամ բնակության վայրի, բաց քվեարկությամբ, երկու և կես տարի ժամանակով։

Դատավորներն ու ժողովրդական ատենակալները պատասխանատու են ընտրողների կամ իրենց ընտրող մարմինների առջև, հաշվետու են նրանց և կարող են նրանց կողմից ետ կանչվել օրենքով սահմանված կարգով։

Հոդված 151. Հայկական ՍՍՀ գերագույն դատարանը Հայկական ՍՍՀ բարձրագույն դատական մարմինն է և հսկողություն է իրականացնում հանրապետության դատարանների դատական գործունեության նկատմամբ։

Հայկական ՍՍՀ գերագույն դատարանը ընտրվում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի կողմից՝ կազմված նախագահից, նախագահի տեղակալներից, անդամներից և ժողովրդական ատենակալներից, հինգ տարի ժամանակով։

Հոդված 152. Քաղաքացիական և քրեական գործերի քննությունը բոլոր դատարաններում կատարվում է կոլեգիալ կարգով, առաջին ատյանի դատարանում՝ ժողովրդական ատենակալների մասնակցությամբ ։ Ժողովրդական ատենակալները արդարադատություն իրականացնելիս օգտվում են դատավորի բոլոր իրավունքներից։

Հոդված 153. Դատավորներն ու ժողովրդական ատենակալները անկախ են և ենթարկվում են միայն օրենքին։

Հոդված 154. Հայկական ՍՍՀ-ում արդարադատությունն իրականացվում է օրենքի և դատարանի առջև քաղաքացիների հավասարության սկզբունքներով։

Հոդված 155. Գործերի քննությունը բոլոր դատարաններում դռնբաց է։ Գործերը դատարանի դռնփակ նիստում լսել թույլատրվում է միայն օրենքով սահմանված դեպքերում, ընդ որում, պահպանելով դատավարության բոլոր կանոնները։

Հոդված 156. Մեղադրյալի համար ապահովվում է պաշտպանության իրավունք։

Հոդված 157. Դատավարությունը տարվում է հայերեն լեզվով կամ տվյալ վայրի բնակչության մեծամասնության լեզվով։ Գործին մասնակցող այն անձանց համար, ովքեր չեն տիրապետում դատավարության լեզվին, իրավունք է ապահովվում գործի նյութերին լրիվ ծանոթանալու, դատական գործողություններին մասնակցելու թարգմանչի միջոցով և իրավունք՝ դատարանում հանդես գալու մայրենի լեզվով։

Հոդված 158. Ոչ ոքի չի կարելի հանցագործության մեջ մեղավոր ճանաչել, ինչպես նաև քրեական պատժի ենթարկել այլ կերպ, քան դատարանի դատավճռով և օրենքին համապատասխան։

Հոդված 159. Քաղաքացիներին և կազմակերպություններին իրավաբանական օգնություն ցույց տալու համար գործում է փաստաբանների կոլեգիա։ Օրենսդրությամբ նախատեսված դեպքերում քաղաքացիներին իրավաբանական օգնություն ցույց է տրվում անվճար։

Փաստաբանական ծառայության կազմակերպումն ու գործունեության կարգը որոշվում են ՍՍՀ Միության և Հայկական ՍՍՀ օրենսդրությամբ։

Հոդված 160. Քաղաքացիական և քրեական գործերի դատավարությանը թույլատրվում է հասարակական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների ներկայացուցիչների մասնակցությունը։

Հոդված 161. Ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների միջև տնտեսական վեճերը լուծում են պետական արբիտրաժի մարմինները՝ իրենց իրավասության շրջանակներում։

Գլուխ 19

ԴԱՏԱԽԱԶՈՒԹՅՈՒՆ

Հոդված 162. Բոլոր մինիստրությունների, պետական կոմիտեների և գերատեսչությունների, ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների, ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործադիր ու կարգադրիչ մարմինների, կոլտնտեսությունների, կոոպերատիվ և այլ հասարակական կազմակերպությունների, պաշտոնատար անձանց, ինչպես նաև քաղաքացիների կողմից օրենքների ճշգրիտ և միատեսակ կատարման նկատմամբ բարձրագույն հսկողությունը Հայկական ՍՍՀ տերիտորիայում իրականացնում են ՍՍՀՄ գլխավոր դատախազը և նրան ենթակա Հայկական ՍՍՀ դատախազն ու ստորադաս դատախազները։

Հոդված 163. Հայկական ՍՍՀ դատախազը նշանակվում է ՍՍՀՄ գլխավոր դատախազի կողմից։

Շրջանային և քաղաքային դատախազները նշանակվում են Հայկական ՍՍՀ դատախազի կողմից և հաստատվում ՍՍՀՄ գլխավոր դատախազի կողմից։

Հոդված 164. Հայկական ՍՍՀ դատախազի և բոլոր ստորադաս դատախազների լիազորությունների ժամկետը հինգ տարի է։

Հոդված 165. Դատախազության մարմիններն իրենց լիազորությունները իրականացնում են անկախ որևէ տեղական մարմնից, ենթարկվելով միայն ՍՍՀՄ գլխավոր դատախազին։

# IX. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԲԸ, ԴՐՈՇԸ, ՀԻՄՆԸ ԵՎ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԸ

Հոդված 166. Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության պետական գերբը բովանդակում է Մեծ և Փոքր Արարատների պատկերը, որի վերևում՝ արևի ճառագայթներով շրջանակված հնգաթև աստղի վրա՝ մուրճ և մանգաղ։ Լեռների ստորոտում խաղողի վազ՝ ողկույզով ու տերևներով, աջ և ձախ կողմից՝ ցորենի հասկեր։ Գերբի շուրջը, եզերքում, մակագրություն՝ «Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետություն», ներքևում, կարմիր ֆոնի վրա, հայերեն և ռուսերեն լեզուներով մակագրություն՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»։

Հոդված 167. Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության պետական դրոշը ուղղանկյուն կարմիր պաստառ է՝ միջտեղում դրոշի ամբողջ երկայնքով անցնող կապույտ շերտով։ Կապույտ շերտը կազմում է դրոշի լայնքի քառորդ մասը։ Դրոշի պաստառի վերին կարմիր մասում, կոթի մոտ, պատկերված են ոսկեզօծ մուրճ ու մանգաղ, իսկ դրանց վերևում՝ ոսկերիզով շրջանակված հնգաթև կարմիր աստղ։ Դրոշի լայնության և երկարության հարաբերությունն է 1:2։

Հոդված 168. Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության պետական հիմնը հաստատում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահությունը։



Հոդված 169. Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության մայրաքաղաքը Երևանն է։

# X. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆՐԱ ՓՈՓՈԽՄԱՆ ԿԱՐԳԸ

Հոդված 170. Հայկական ՍՍՀ բոլոր օրենքները և պետական մարմինների մյուս ակտերը հրատարակվում են Հայկական ՍՍՀ Սահմանադրության հիման վրա և նրան համապատասխան։

Հոդված 171. Հայկական ՍՍՀ Սահմանադրության փոփոխումը կատարվում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի որոշմամբ՝ ընդունված Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատների ընդհանուր թվի առնվազն երկու երրորդի մեծամասնությամբ։

---

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԵԶՐԱՓԱԿՄԱՆ ԽՈՍՔԸ

Ընկեր դեպուտատնե՛ր։

Ձեր քննարկմանն է ներկայացված հանրապետության Սահմանադրությունը գործողության մեջ մտցնելու կարգի վերաբերյալ օրենքի նախագիծը։ Օրենքը նախատեսում է սահմանել, որ մինչև Սահմանադրությունն ուժի մեջ մտնելը ընդունված մյուս բոլոր օրենսդրական ակտերը պահպանում են իրենց ուժը, Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրությանը չհակասելու պարագայում։

Դրա հետ մեկտեղ առաջարկվում է, նոր հիմնական օրենքին համապատասխան, երկարաձգել Հայկական ՍՍՀ իններորդ գումարման Գերագույն սովետի լիազորությունների ժամկետը և համապատասխանորեն փոխել պետական իշխանության՝ մինչ հանրապետության նոր Սահմանադրության ընդունումն ընտրված տեղական մարմինների լիազորությունների ժամկետները, ինչպես նաև հանձնարարել հանրապետության Գերագույն սովետի նախագահությանը՝ որոշելու Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և հանրապետության տեղական սովետների հերթական ընտրությունների ժամանակը։

Նախատեսվում է նաև հանձնարարել Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությանը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին՝ մշակել նոր Սահմանադրությունից բխող անհրաժեշտ օրենսդրական ակտերը, ինչպես նաև հանձնարարել ժողովրդական դեպուտատների տեղական սովետներին, մինիստրություններին ու գերատեսչություններին, մյուս պետական ու հասարակական մարմիններին՝ քննության առնել Հայկական ՍՍՀ Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկման ընթացքում քաղաքացիներից ստացված առաջարկություններն ու դիտողությունները՝ այդ մարմինների գործունեությանը առնչված հարցերի առթիվ և միջոցներ ձեռնարկել դրանց իրականացման համար։

Սահմանադրության հաստատման կապակցությամբ հարկավոր է նախապատրաստել մի շարք օրենսդրական ակտեր, որոնց ընդունումն ուղղակի նախատեսված է Սահմանադրությամբ, կամ բխում է նրանից։ Դրանց թվին են պատկանում այնպիսի ակտեր ինչպիսիք են՝ Գերագույն սովետի ռեգլամենտը, ընտրությունների մասին օրենքը, քաղաքացիության վերաբերյալ օրենքը և այլ ակտեր, որոնց նախագծերը պատրաստելու են հանրապետության Գերագույն սովետի նախագահությունը, ինչպես նաև նրա մշտական հանձնաժողովները։ Պետք է մշակվի այնպիսի կարևոր մի ակտ, ինչպիսին է Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի մասին օրենքը։

Նոր Սահմանադրությունից բխում է նաև հանրապետության ընթացիկ օրենսդրության մեջ մի շարք փոփոխություններ ու լրացումներ մտցնելու անհրաժեշտությունը։ Ինչպես զեկուցման մեջ նշվեց, այստեղ հարկավոր է հաշվի առնել և օգտագործել աշխատավորների՝ հանրապետության Սահմանադրության նախագծի քննարկման ընթացքում արած բազմաթիվ կոնկրետ դիտողություններն ու ցանկությունները։

Հայկական ՍՍՀ Սահմանադրությունը գործողության մեջ դնելու կարգի վերաբերյալ օրենքի նախագիծը դեպուտատներին բաժանված է։

Հարգելի ընկեր դեպուտատնե՛ր։



Հանրապետության Գերագույն սովետը մեծ խանդավառությամբ ու վերելքով միահամուռ ընդունեց Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության նոր Սահմանադրությունը։

Հայկական ՍՍՀ ժողովրդի անունից, արտահայտելով նրա կամքը, կատարելով նրա հանձնարարությունը, Սովետական Հայաստանի պետական իշխանության բարձրագույն մարմինը հռչակեց նրա նոր Հիմնական օրենքը, դրանով իսկ կատարեց հանրապետության համար անանց պատմական նշանակություն ունեցող քաղաքական ու պետական բարձրագույն մի ակտ։ (Երկարատև ծափահարություններ)։

Պատմությունը հայ ժողովրդի արդի սերունդներին, հանրապետության բոլոր աշխատավորներին արժանացրել է իրենց նոր Սահմանադրության ստեղծման և նրա ընդունման ակտիվ մասնակիցները լինելու բարձր պատվին և դրա համար նույնքան բարձր պատասխանատվություն է դրել նրանց վրա։

Այդ ակտը մեր ժողովրդի պատմության մեջ աշխատավորների հիշողության մեջ կմնա որպես մեծ Հոկտեմբերի, փառապանծ կոմունիստական կուսակցության, նրա լենինյան ազգային քաղաքականության, Սովետական Միության ժողովուրդների անխախտ բարեկամության, ժողովրդական իշխանության լենինյան սկզբունքների իսկական հաղթանակի վառ վկայությունը։ (Ծափահարություններ)։

Այսօր, երբ ուժի մեջ է մտնում և սկսում է գործել Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրությունը, մենք նորից ու նորից ընդգծում ենք, որ հանրապետության աշխատավորները, ողջ հայ ժողովուրդը խորապես գիտակցում են, որ նրա ընդունումը, նրանում վավերագրված՝ հանրապետության ու նրա ժողովրդի քաղաքական, տնտեսական, սոցիալ-կուլտուրական վիթխարի նվաճումները հնարավոր դարձան շնորհիվ սովետական իշխանության, շնորհիվ ՍՄԿԿ լենինյան իմաստուն ազգային քաղաքականության, շնորհիվ ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության, շնորհիվ Սովետական Միության կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր բազմազգ հայրենիքի բոլոր ժողովուրդների համատեղ աշխատանքի ու պայքարի։ (Ծափահարություններ)։

Այս պատմական պահին, ընկեր դեպուտատնե՛ր, ինչպես չհիշել այն մեծագույն երջանիկ օրը, երբ մեր հնադարյան հայոց աշխարհում փայլեց ազատության Հոկտեմբերյան արևը, և հաստատվեց սովետական իշխանություն, երբ շահագործումից առհավետ ազատագրված աշխատավորները, Լենինի կուսակցության ղեկավարությամբ, ձեռնամուխ եղան սոցիալիզմի շենքի կառուցմանը։ Մենք չենք կարող չհիշել մեր ժողովրդի անցած ստեղծարար աշխատանքի ու հերոսական պայքարի ուղին, դեպի զարգացած սոցիալիզմի հասարակարգը տանող այդ մեծ ճանապարհի անմոռանալի փուլերը՝ առաջին հնգամյակների անձնվեր աշխատանքով լի տարիները, երբ բոլորովին նոր, սոցիալիստական հիմքերի վրա ստեղծվում էր խոշոր ինդուստրիան, կազմակերպվում էին կոլեկտիվ տնտեսություններ, զարգանում էին կուլտուրան և ժողովրդական կրթությունը։ Մեր հիշողությունից երբեք չեն ջնջվի ֆաշիզմի դեմ մղված պատերազմի դժվարին ու հերոսական տարիները, երբ հայ ժողովուրդը, սովետական երկրի մյուս ժողովուրդների հետ միասին, միահամուռ ոտքի ելավ պաշտպանելու մեծ Հոկտեմբերի նվաճումները, չեն մոռացվի նվաճումները, չեն մոռացվի ետպատերազմյան ծանր տարիները, երբ բուժվում էին պատերազմի վերքերը, նոր ուժով ու ավելի մեծ մասշտաբներով էին զարգանում ժողովրդական տնտեսությունը, գիտությունը, կուլտուրան, աճում աշխատավոր մարդկանց բարեկեցությունը։ Մասսաների աննախընթաց խանդավառ ու ստեղծարար աշխատանքի արգասիքը եղավ այն, որ ինչպես մեր ողջ երկիրը, այնպես էլ մեր հանրապետությունը հասավ արդի առաջադիմության ու բարգավաճման բարձունքներին։

Ամբողջ աշխարհն ականատես է, թե ինչպես հայ ժողովուրդը, որը 63 տարի առաջ, ապրիլյան օրերին կանգնած էր օրհասական լինել, թե չլինել հարցի առաջ, երբ թշնամիների կողմից դրա մի հատվածը դրվել էր իմպերիալիստական գիշատիչների ողհասեղանին, ենթարկվում էր անգութ գենոցիդի,

նույն այդ ժողովուրդը, կանգնելով լենինյան գաղափարների դրոշի ներքո, կոմունիստական կուսակցության գլխավորությամբ, ռուս ժողովրդի, սովետական բոլոր ժողովուրդների հետ միասնական ընտանիքում, հասավ իր ստեղծարար ուժերի աննախադեպ զարգացմանը, կառուցեց իր այսօրվա ծաղկուն սոցիալիստական հայրենիքը և այսօր, 1978 թվականի ապրիլին, արժանապատվության բարձր գիտակցությամբ ընդունում և հռչակում է կենսահաստատ իր նոր Սահմանադրությունը, որի բարձունքից հպարտությամբ, լուսավոր լավատեսությամբ լեցուն հայացքը հառում է առաջ՝ կոմունիստական գալիքին։ (Ծափահարություններ)։

Հենց դա է, ընկերներ, լենինյան կուսակցության հեղափոխական վերափոխիչ ուժի, իսկական ազատություն ձեռք բերած ժողովրդի ստեղծարար հանճարի կոնկրետ արտահայտություններից մեկը, նոր կյանքի կառուցման գործում մեր ժողովրդի ձեռք բերած մեծագույն նվաճումների, դեպի տնտեսական ու կուլտուրական բարգավաճման բարձունքները հաղթարշավի հանրագումարը։ (Ծափահարություններ)։

Հանրապետության աշխատավորները նոր Սահմանադրությունն ընդունեցին Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման՝ հայ ժողովրդի պատմական ճակատագրում այդ նշանավոր իրադարձության, 150-ամյակի տոնակատարության նախօրյակին։

Սահմանադրության հռչակման այս հանդիսավոր օրը ինչպես չհիշել այն «օրհնված սհաթը», երբ հայ ժողովուրդը իր բախտը առհավետ կապեց ռուս մեծ ժողովրդի հետ, որը եղբայրական օգնության ձեռք մեկնեց, փրկության ափ դուրս բերեց նրան։ (Ծափահարություններ)։ Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելուց ի վեր նոր դարաշրջան սկսվեց մեր ժողովրդի պատմության մեջ, եղբայրական բարեկամությունը ռուս մեծ ժողովրդի և Ռուսաստանի մյուս ժողովուրդների հետ, նրանց համատեղ պայքարը սոցիալական ու ազգային կեղեքման դեմ հայ ժողովրդի առաջ բացեցին միակ ճիշտ ճանապարհը դեպի ազատություն, ազգային վերածնունդ և սոցիալիստական պետականություն, որոնք իրականություն դարձան մեծ Հոկտեմբերի հաղթանակի շնորհիվ։

Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելու 150-ամյակը մեր ժողովուրդը նշելու է որպես ինտերնացիոնալիզմի, հայ և ռուս ժողովուրդների, Սովետական Միության բոլոր ժողովուրդների եղբայրության ու բարեկամության մեծ տոն։ (Ծափահարություններ)։

Եվ այսօր, մեր նոր Սահմանադրության հռչակման օրը, մենք նորից ու նորից հայտարարում ենք, որ անխորտակելի բարեկամությունը և անխախտ եղբայրությունը ռուս մեծ ժողովրդի, ՍՍՀ Միության բոլոր ժողովուրդների հետ հայ ժողովրդի սրբության սրբոցն է, որը նա պահում է և առհավետ կպահպանի աչքի լույսի պես։ (Երկարատև ծափահարություններ)։

Սովետական Հայաստանի փառապանծ վաթսունամյակը մեր ժողովուրդը կնշի՝ զինված ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ նոր սահմանադրություններով։

Եվ այսօր, նոր Սահմանադրությունը հռչակելիս մենք խորին երախտագիտության զգացումով ենք հիշում նրանց, ովքեր կառուցել և մարտերում պաշտպանել են սոցիալիզմը, դրել զարգացած սոցիալիստական հասարակարգի հաստատուն հիմքը, հերոսական աշխատանքն այն սերունդների, որոնց անմահ սխրանքն է ապրում մեր գործերում և սրտերում ու մարմնավորված է Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության դրոշի հաղթական կարմիրում։ (Ծափահարություններ)։

Ընկեր դեպուտատնե՛ր։ Ինչպես ասված է զեկուցման մեջ, Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկումը հանրապետության աշխատավորների մեջ առաջ բերեց քաղաքական և աշխատանքային վիթխարի վերելք, ստեղծագործական նոր, թարմ ուժերի հորդում ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների և տասներորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական վիթխարի ծրագրի կենսագործման համար մղվող պայքարում։

Քննարկումը վերածվեց աշխատավորների կողմից մեր փառապանծ կուսակցության քաղաքականության, նրա լենինյան կուրսի լիակատար պաշտպանության հզոր ցույցի, այն մի անգամ ևս ամենահամոզիչ կերպով վկայեց ժողովրդի ու կուսակցության կուռ միասնության մասին։

Նոր Սահմանադրության ընդունումը խորապես կանդրադառնա հանրապետության կյանքի բոլոր կողմերի վրա, կնպաստի կոմունիստական շինարարության վեհապանծ պլանների հաջող կատարմանը։ Սահմանադրության գաղափարներն ու սկզբունքները կդառնան սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման ու խորացման, էկոնոմիկայի, կուլտուրայի, մասսաների բարեկեցության անշեղ վերելքի զորեղ միջոց։

Սովետական Հայաստանի աշխատավորները հոգեկան գոհունակությամբ, խոսքով ու գործով ջերմ հավանություն են տալիս և քվեարկում հօգուտ Հանրապետության կյանքի հիմնական օրենքի։

Դրա փայլուն վկայությունն է ներկա նստաշրջանին հասցեագրած աշխատանքային զեկույցների հոսքը։ Նրանցում հանրապետության աշխատավորական կոլեկտիվները հաղորդում են նոր Սահմանադրության ընդունման պատվին իրենց ձեռք բերած արտադրական հաջողությունների մասին։ Բազմաթիվ արտադրական կոլեկտիվներ, հազարավոր աշխատավորներ պարտավորվում են տասներորդ հնգամյակի երեք տարվա պլանային առաջադրանքները կատարել ՍՍՀՄ Սահմանադրության առաջին տարելիցի օրը, աշխատել տավել արտադրողականությամբ և արդյունավետությամբ, բստ ամենայնի բարձրացնել աշխատանքի որակը։ Նրանց սրտերը լի են հայրենասիրական խոր հպարտությամբ՝ հանրապետության օրենսդրական բարձրագույն մարմնի կողմից կատարված այնպիսի նշանավոր պատմական ակտի նշանակության գիտակցությամբ, ինչպիսին է Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության նոր Սահմանադրության ընդունումն ու հռչակումը։ (Ծափահարություններ)։

Այսօր, երբ իր լիարյուն կյանքն է սկսում նոր Սահմանադրությունը, Սովետական Հայաստանի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ժողովրդական մտավորականությունը, երիտասարդությունը, հանրապետության բոլոր աշխատավորները միահամուռ պաշտպանում են մեծ Լենինի կոմունիստական կուսակցության ներքին և արտաքին իմաստուն քաղաքականությունը, բարձր են գնահատում նրա հարաճուն ղեկավար դերը սովետական հասարակության կյանքում, նրա տիտանական գործունեությունը կոմունիզմի կառուցման մայրուղին հարթելու ուղղությամբ, իրենց անսասան հավատարմության և խորին շնորհակալության խոսքն են հայտնում Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը, նրա Կենտրոնական կոմիտեին, Կենտկոմի քաղբյուրոյին, ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին Սովետական Հայաստանի նկատմամբ հայրական հոգատարության համար, մեր մեծ հայրենիքի՝ ՍՍՀ Միության բարգավաճումը, հզորությունն ու փառքն ապահովելու համար։ (Երկարատև ծափահարություններ)։

Թույլ տվեք, հարգելի ընկեր դեպուտատներ, հավաստիացնելու ՍՄԿԿ Կենտկոմին, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությանը և անձամբ ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին, որ հայ ժողովուրդը, Սովետական Հայաստանի աշխատավորները, ոգեշնչված ՍՍՀՄ նոր Սահմանադրությամբ և Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրությամբ, մեր բազմազգ սոցիալիստական հայրենիքի միասնական զորեղ ընտանիքում, ուժերի լիակատար նվիրումով կշարունակեն իրենց անձնվեր պայքարը կոմունիստական կուսակցության XXV համագումարի որոշումների կատարման, մեր փառապանծ կուսակցության մեծ կանխագծումների կենսագործման համար, կուսակցություն, որը հաղթական երթով, լենինյան կուրսով, Հոկտեմբերի ուղիով դեպի կոմունիզմի պայծառ բարձունքներն է առաջնորդում սովետական մեծ ժողովրդին։ (Երկարատև, բուռն ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում)։

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության

# ՕՐԵՆՔԸ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ (ՀԻՄՆԱԿԱՆ ՕՐԵՆՔԸ) ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԴՆԵԼՈՒ ԿԱՐԳԻ ՄԱՍԻՆ

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության Գերագույն սովետը **որոշում է.**

**Հոդված 1.** Մինչև 1978 թվականի ապրիլի 14-ն ընդունված Հայկական ՍՍՀ օրենքները, պետական մարմինների մյուս ակտերը պահպանում են իրենց գործողությունը, որքանով դրանք չեն հակասում Հայկական ՍՍՀ 1978 թվականի Սահմանադրությանը:

**Հոդված 2.** Սահմանել, որ մինչև Հայկական ՍՍՀ 1978 թվականի Սահմանադրության ընդունումն ընտրված Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը իրականացնում է Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրությամբ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետին վերապահվող բոլոր լիազորությունները:

Մինչև Հայկական ՍՍՀ 1978 թվականի Սահմանադրության ընդունումն ընտրված պետական իշխանության տեղական մարմինները իրականացնում են Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրությամբ ժողովրդական դեպուտատների տեղական սովետներին վերապահվող բոլոր լիազորությունները:

Ժողովրդական դեպուտատների սովետների լիազորությունների ժամկետները, որոնք սահմանված են Հայկական ՍՍՀ 1978 թվականի Սահմանադրության 80-րդ հոդվածով, տարածվում են մինչև Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրության ընդունումն ընտրված սովետների վրա:

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությանը՝ որոշել Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և Հայկական ՍՍՀ ժողովրդական դեպուտատների տեղական սովետների հերթական ընտրությունների անցկացման ժամանակը:

**Հոդված 3.** Ժողովրդական դեպուտատների սովետների գործադիր և կարգադրիչ մարմինները, մինիստրություններն ու գերատեսչությունները, դատարանները և Հայկական ՍՍՀ 1937 թվականի Սահմանադրությանը համապատասխան ստեղծված մյուս պետական մարմինները իրականացնում են Հայկական ՍՍՀ 1978 թվականի Սահմանադրությամբ, ինչպես նաև այսուհետև՝



մինչև Հայկական ՍՍՀ նոր Սահմանադրությունից բխող օրենսդրական ակտերի ընդունումը, դրա ընդունումից առաջ հրատարակված օրենսդրությամբ նրանց վերապահված լիազորությունները:

**Հոդված 4.** 1978 թվականի Սահմանադրության 150-րդ հոդվածով սահմանված շրջանային (քաղաքային) ժողովրդական դատարանների ժողովրդական ատենակալների լիազորությունների ժամկետը տարածվում է մինչև Սահմանադրության ընդունումն ընտրված ժողովրդական ատենակալների վրա:

**Հոդված 5.** Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությանը՝ մշակել և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի քննարկմանը ներկայացնել Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի, Հայկական ՍՍՀ ժողովրդական դեպուտատների տեղական սովետների ընտրությունների օրենքների նախագծերը, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի ռեգլամենտի նախագիծը, ինչպես նաև որոշել Հայկական ՍՍՀ օրենսդրությունը Հայկական ՍՍՀ 1978 թվականի Սահմանադրությանը համապատասխանեցնելու աշխատանքի կազմակերպման կարգը:

**Հոդված 6.** Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին՝ մշակել և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի քննարկմանը ներկայացնել Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի մասին օրենքի նախագիծը:

**Հոդված 7.** Ժողովրդական դեպուտատների սովետներին, նրանց գործադիր և կարգադրիչ մարմիններին, մինիստրություններին ու գերատեսչություններին, պետական ու հասարակական մյուս մարմինների ղեկավարներին՝ քննության առնել Հայկական ՍՍՀ Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկման կապակցությամբ այդ մարմինների գործունեության հետ առնչված հարցերի վերաբերյալ քաղաքացիներից ստացված առաջարկությունները ու դիտողությունները և միջոցներ ձեռնարկել դրանց իրականացման ուղղությամբ:

**Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ՝**
**Բ. ՍԱՐԿԻՍՈՎ**

**Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝**
**Մ. ԲԱԽՉԻՆՅԱՆ**

*14 ապրիլի 1978 թվականի, քաղ. Երևան*

---

# ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՄԵԾ ՀԻՄՆԱԴԻՐԸ

(Կ. ՄԱՐՔՍԻ ԾՆՆԴՅԱՆ 160-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Մ. Վ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**

*ՊԱՏՄՈՒԹՅԱՆԸ ՀԱՅՏՆԻ մեծագույն դեմքերից բացառիկ է Կարլ Մարքսը: Նա իր հավատարիմ բարեկամ Ֆրիդրիխ Էնգելսի հետ միասին ստեղծեց աշխարհի հեղափոխական վերակերտման՝ գիտական կոմունիզմի ուսմունքը, որը լուսավորեց պրոլետարիատի ու բոլոր աշխատավորների ազատագրման ուղին: Այն տիրապետեց ժողովրդական զանգվածներին, վերածվեց նյութական հզոր ուժի և մարմնավորվեց համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող հաղթանակների մեջ: Գիտական կոմունիզմի գաղափարները կենսագործվել են ՍՍՀՄ-ում ու սոցիալիստական մյուս երկրներում և գործողության ուղեցույց են կապիտալիստական աշխարհի ճնշված մասսաների ազատագրական պայքարում: Պատմությունը զարգանում է այդ կենսահաստատ ուսմունքի նշած ուղիով և հարստացնում նրա ստեղծագործական գանձարանը:*

***

*Հանճարեղ մտածող Մարքսն առաջին հերթին բոցաշունչ հեղափոխական էր, նրա համար գիտությունը հեղափոխական շարժիչ ուժ էր: Նա իր ամենահաղթ ուսմունքով բացահայտեց մարդկության զարգացման դիալեկտիկան, կապիտալիզմի «անատոմիան» և կանխագծեց նոր աշխարհի կառուցման մայրուղին ու գիտականորեն մշակեց հասարակության սոցիալիստական վերակերտման տեսությունը: Համաձայն պատմության մատերիալիստական ըմբռնման, հասարակության զարգացման հիմքը արտադրաուժերն ու արտադրահարաբերություններն են, որոնք և պայմանավորում են հոգևոր վերնաշենքի բնույթը: Մարքսիզմը տվեց այն բոլոր հարցերի պատասխանը, որոնք հուզում էին աշխատավոր զանգվածներին, փաստերի տրամաբանությամբ մերկացրեց հասարակության մասին եղած հակագիտական, իդեալիստական տեսությունները:*

*Մարքսիզմը միակ ուսմունքն է, որը լայն տարածում գտավ հողագնդի բոլոր աշխարհամասերում, դարձավ ընչազուրկների ու կեղեքվածների սոցիալական ու ազգային ազատագրման հուսալի զենքը: Մարքսիզմը հրապարակ եկավ բուրժուական կարգերի հասունացման ժամանակաշրջանում, երբ կապիտալիզմը տակավին անարգել զարգացման հնարավորություններ ուներ:*

*Դժվարին է եղել Մարքսի կյանքը, բայց նա հեշտ ուղիներ չի փնտրել, որովհետև անվեհեր մարտիկ էր: Աշխատանքի մարդկանց ազատության ու երջանկության համար շահագործողների և նրանց կամակատարների դեմ մղվող պայքարը նրա կյանքի կոչումն էր: Տակավին պատանեկության տարիներից նա մենամարտի է բռնվել ինքնակալության, խավարամտության, քաղաքական ու սոցիալական կեղեքման դեմ: Բազմաբեղուն կյանքի ընթացքում նա անողոք*



*քննադատեց կեղծ գաղափարներն ու լոզունգները, փարիսեցիությունը, ստորությունը:*

*Մարքսի անհատականությունը բազմերանգ էր: Նրա մեջ օրգանապես միաձուլվել էին մեծ գիտնականի, անխոնջ հետազոտողի, աննկուն հեղափոխական տրիբունի, պրոլետարական իմաստուն ստրատեգի և տակտիկի, աշխատավոր մասսաների ազատագրական պայքարի ղեկավարի գծերը և մարդկային վեհ հատկությունները:*

*Մարքսիզմը հեղափոխական պայքարի ղեկավարման գիտություն է: Այդ ուսմունքն աչքի է ընկնում կուռ հետևողականությամբ, եզրակացությունների պարզորոշությամբ, շարադրանքի ամբողջականությամբ ու միասնությամբ: Առանց մատերիալիստական դիալեկտիկայի անհնար կլիներ ստեղծել քաղաքատնտեսությունը, առանց դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի, մարքսիզմի տնտեսական տեսության անհնար կլիներ սոցիալիզմը ուտոպիայից վերածել գիտության:*

*Վ. Ի. Լենինը շեշտել է, որ մարքսիզմը հանդես է եկել համաշխարհային քաղաքակրթության մեծ ճանապարհին, այսինքն՝ օգտագործել է այն լավագույնը, ինչ ձեռք է բերվել մինչ այդ և պատասխանել այն հարցերին, որը առաջադրել էր մարդկության առաջավոր միտքը:*

*Անդրադառնալով պատմության մատերիալիստական ըմբռնման տեսությանը, Վ. Ի. Լենինը գրել է. «Նախամարքսյան «սոցիոլոգիան» և պատմագրությունը լավագույն դեպքում տալիս էին հում ու կտոր հավաքված հում փաստերի կուտակում և պատմական պրոցեսի առանձին կողմերի պատկերում: Մարքսիզմը մատնանշեց հասարակական-տնտեսական ֆորմացիաների ծագման, զարգացման և անկման պրոցեսի համապարփակ, ամենակողմանի ուսումնասիրության ուղին, քննելով բոլոր հակասական տենդենցների ամբողջությունը, հանգեցնելով դրանք հասարակության տարբեր դասակարգերի կյանքի և արտադրության ճիշտ որոշելի պայմաններին, վերացնելով սուբյեկտիվիզմն ու կամայականությունն առանձին «գլխավոր» իդեաների ընտրության կամ նրանց մեկնաբանման մեջ, բացահայտելով անխտիր բոլոր իդեաների և բոլոր տարբեր տենդենցների* **արմատները** *նյութական արտադրողական ուժերի կացության մեջ» (***Երկեր***, հ. 21, էջ 57):*

*Տնտեսագիտական մտքի պատմության մեջ Մարքսն առաջինն էր, որ ստեղծեց հետևյալ արժեքի ուսմունքը, որը գիտական մեծ հայտնագործություն էր և ունեցավ հեղափոխականացնող նշանակություն պրոլետարիատի համար: Մարքսը ցույց տվեց, որ բուրժուական հասարակարգին հատուկ են խոր հակասություններ, ամենից առաջ, աշխատանքի ու կապիտալի, արտադրության հասարակական բնույթի ու յուրացման մասնավոր ձևի միջև, որոնք վերջիվերջո կհասցնեն սոցիալիստական հեղափոխության:Այսպիսով, մարքսիստական քաղաքատնտեսությունը, որի անկյունաքարը հավելյալ արժեքի թեորիան է, դարձավ հզոր զենք պրոլետարիատի ազատագրական պայքարում:*

*Նշելով ուտոպիստ սոցիալիստների դերը կապիտալիզմի քննադատության հարցում, որոնք պրոլետարիատին դիտում էին սոսկ որպես տառապող դասակարգ ու կարեկցում նրան, Մարքսն ու Էնգելսը խորապես ըմբռնեցին պրոլետարիատի մարտնչող ոգին, որը կոչված է ազատագրելու իրեն ու ողջ մարդկությանը: «Մարքսի ուսմունքի մեջ գլխավորը,— գրել է Վ. Ի. Լենինը,— պրոլետարիատի, իբրև սոցիալիստական հասարակություն կերտողի, համաշխարհային-պատմական դերի պարզաբանումն է» (նույն տեղը, հ. 18, էջ 736): Պրոլետարիատն իր շուրջն է համախմբում բոլոր աշխատավորներին, մասնավորապես գյուղացիներին և նրանց գրոհի տանում կապիտալիզմի դեմ. «...գյուղացիները,— գրել՝է Կ. Մարքսը,— իրենց բնական դաշնակիցն ու առաջնորդն են համարում* **քաղաքային պրոլետարիատին**, *որը կոչված է բուրժուական կարգը տապալելու» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս,* **Ընտիր Երկեր**, *հ. 1, էջ 394):*

*Մարքսը և Էնգելսը հիմնավորեցին կապիտալիզմի կործանման ու կոմունիզմի հաղթանակի պատմական անխուսափելիությունը, սոցիալիստական*

հեղափոխության կատարման և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման անհրաժեշտությունը, բնութագրեցին կոմունիստական հասարակության երկու փուլերը (սոցիալիզմ ու կոմունիզմ) և այլն։ Այդ եզրահանգումները կատարված են ռեալ իրականության գիտական վերլուծության և դեպքերի հետագա զարգացման խոր ըմբռնողության հիման վրա. «Մարքսի մոտ,— նշել է Վ. Ի. Լենինը,— մի կաթիլ անգամ ուտոպիզմ չկա այն իմաստով, որ նա հնարեր, երևակայությամբ «նոր» հասարակություն ստեղծեր։ Ո՛չ, նա ուսումնասիրում էր, իբրև մի բնապատմական պրոցես, նոր հասարակության ծնունդը հնից, այդ հնից դեպի նորը տանող անցման ձևերը» (Երկեր, հ. 25, էջ 549)։

Մարքսի տարերքը հեղափոխությունն էր։ Նա Բեռլինի համալսարանն ավարտելուց հետո, 40-ական թվականների սկզբից, ծավալում է քաղաքական-հրապարակախոսական լայն գործունեություն և շուտով հանդես գալիս որպես պրոլետարական հեղափոխական։ Սկսվում են կառավարական դաժան հետապնդումները, և նա հարկադրված է լինում բռնել տարագիր հեղափոխականի դժնի ուղին՝ Գերմանիայից անցնում է Ֆրանսիա, այնտեղից՝ Բելգիա և ապա Անգլիա։

Դիմակայելով ռեակցիայի հարձակումներին, Մարքսը և Էնգելսը համատեղ պայքար են մղում՝ միավորելու հեղափոխականների ուժերը, կազմակերպելու պրոլետարիատին։ Դրա գլխավոր նախապայմանը կոմունիստական կուսակցության ստեղծումն էր. Ֆ. Էնգելսը գրել է. «Որպեսզի պրոլետարիատը վճռական մոմենտին լինի բավականաչափ ուժեղ և կարողանա հաղթել, անհրաժեշտ է,— Մարքսը և ես այդ դիրքն էինք պնդում սկսած 1847 թ.,— որ նա կազմի հատուկ կուսակցություն, առանձին բոլոր մնացածներից և հակադիր նրանց, որը գիտակցում է իրեն որպես դասակարգային կուսակցություն» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 28, стр. 170)։

Այդպիսի կուսակցության սաղմ էր «Կոմունիստների միությունը», որը հիմնեցին նրանք 1847 թվականին։ Այն գործում էր ինտերնացիոնալ սկզբունքով և հանդիսացավ պատմության մեջ առաջին միջազգային կոմունիստական կազմակերպությունը։ Նրա նշանաբանն էր՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»։ Մարքսն ու Էնգելսը գրեցին այդ միության ծրագիրը, որը հրատարակվեց 1848 թվականին՝ Կոմունիստական կուսակցության մանիֆեստը խորագրով։ Շուտով այն դարձավ միջազգային բանվորական, կոմունիստական շարժման առաջին ծրագրային փաստաթուղթը. «Այս փոքրիկ գրքույկը,— գրել է Վ. Ի. Լենինը,— արժե ամբողջ հատորներ. նրա ոգով է ապրում ու շարժվում մինչև այժմ քաղաքակիրթ աշխարհի ամբողջ կազմակերպված ու մարտնչող պրոլետարիատը» (Նույն, հ. 2, էջ 12)։

Այդ հանճարեղ ստեղծագործության մեջ հստակ շարադրված են մարքսիզմի ծրագրային դրույթները, պրոլետարիատի դասակարգային պայքարի ստրատեգիական ու տակտիկական ղեկավարության սկզբունքները։ Հատուկ ուշադրություն է հատկացված պրոլետարական ինտերնացիոնալիզմի արմատավորմանը, բոլոր երկրների բանվորների համախմբմանը՝ միջազգային կապիտալիզմի դեմ մղվող պայքարում։

Առաջադրված մեծ խնդրի լուծման ճանապարհին խոշորագույն իրադարձություն էր I Ինտերնացիոնալի հիմնադրումը՝ 1864 թվականին։ Մարքսն էր ղեկավարում Ինտերնացիոնալի Գլխավոր խորհուրդը, գրում նրա բոլոր կարևորագույն փաստաթղթերը և հետևողականորեն կիրառում միջազգային պրոլետարիատի միավորման գաղափարը. «Անցյալի փորձը ցույց տվեց, որ արհամարհական վերաբերմունքը դեպի եղբայրական այն դաշինքը, որ պիտի գոյություն ունենա տարբեր երկրների բանվորների միջև և նրանց դրդի իրենց ազատագրական պայքարում ամուր պաշտպանել միմյանց, պատժվում է նրանց ցաքուցրիվ ճիգերի ընդհանուր պարտությամբ» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, էջ 456)։

Մարքսը հատուկ ուշադրություն էր դարձնում նաև ճնշված ժողովուրդնե-



րի ազատագրական պայքարին։ Նա շեշտել է, որ ազգային հարցի արմատական լուծումը կապված է սոցիալական մեծ պրոբլեմի լուծման հետ. «Այն ժողովուրդը, որը ճնշում է մի այլ ժողովրդի, սեփական շղթաներն է կռում» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 16, стр. 438)։ Մարքսն ու Էնգելսը բազմիցս զբաղվել են գաղութների ազատագրման, լեհական, իռլանդական և այլ հարցերի լուսաբանմամբ։ Նրանք տարբեր առիթներով անդրադարձել են նաև Հայաստանին, դատապարտել թուրքական բռնակալությունը, որի ներքո հեծում էր արևմտահայությունը, նշել Ռուսաստանի պրոգրեսիվ դերն այդ ժամանակաշրջանում։

Միայն սոցիալիզմն է ժողովուրդներին բերում սոցիալական ազատություն ու ազգային վերածնունդ, խաղաղություն, բարեկամություն ու բարեկեցություն. «Ի հակադրություն հին հասարակությանը՝ իր տնտեսական աղքատությամբ և քաղաքական անմտությամբ,— գրել է Կ. Մարքսը,— ծնվում է նոր հասարակություն, որի միջազգային սկզբունքը կլինի խաղաղությունը, քանի որ ամեն մի ժողովուրդ կունենա միևնույն տիրակալը՝ աշխատանքը» (Նույն տեղը, հ. 17, էջ 5)։

Մարքսի ղեկավարած I Ինտերնացիոնալը կարևոր դեր կատարեց սոցիալիզմի գաղափարախոսությունը բանվորական շարժման հետ միացնելու գործում։ Այն «...դրել է սոցիալիզմի համար մղվող պրոլետարական, միջազգային պայքարի հիմքը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 370)։

Մարքսը և Էնգելսը XIX դարի հեղափոխական շարժման կենտրոնում էին։ Նրանք 1871 թվականին ամբողջ հոգով ողջունեցին «երկինքը գրոհող» Փարիզի կոմունարներին և կատարեցին առավելագույնը նրանց օգնելու համար։ Այդ կոմունան ըստ էության I Ինտերնացիոնալի հոգևոր զավակն էր, պրոլետարական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման առաջին փորձը։ Մարքսը դրա գիտական ընդհանրացմանը նվիրեց իր դասական աշխատություններից մեկը՝ Քաղաքացիական պատերազմը Ֆրանսիայում, շեշտելով, որ պետք է ջարդել հին պետական մեքենան և ստեղծել նոր տիպի պետություն, որի նախատիպը Փարիզի կոմունան էր։ Այն կդառնա ոգեշնչող օրինակ սերունդների համար. «Բանվորների Փարիզն իր Կոմունայով միշտ կմեծարեն իբրև նոր հասարակության փառապանծ նախագուշակի։ Նրա նահատակներն առհավետ տպավորված են բանվոր դասակարգի մեծ սրտում։ Նրա դահիճներին պատմությունն այժմ արդեն գամել է անարգանքի այն սյունին, որից նրանց ազատելու համար անզոր կլինեն նրանց տերտերների բոլոր աղոթքները» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, էջ 663)։

Այո՛, Փարիզի կոմունայի գործը շարունակվեց և իր վառ արտահայտությունը գտավ հատկապես Ռուսաստանում։ Բնորոշ է, որ 1881 թվականին Լոնդոնում՝ Փարիզի կոմունայի 10-ամյակին նվիրված սլավոնական միտինգին ուղղած ողջույնի մեջ, Մարքսն ու Էնգելսը նշեցին. որքան էլ չարախնդան Փարիզի պրոլետարիատի դահիճները, պատմությունն իր խոսքը կասի և հեղափոխական շարժումը «...վերջիվերջո անխուսափելիորեն կհասցնի, գուցե երկարատև ու դաժան պայքարից հետո, ռուսաստանյան Կոմունայի ստեղծման» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 19, стр. 252)։

Մարքսը շատ է զբաղվել համաշխարհային պատմությամբ և հատկապես հետաքրքրվել Ռուսաստանով, սովորել ռուսաց լեզուն և սկզբնաղբյուրներով ուսումնասիրել նրա սոցիալ-տնտեսական ու քաղաքական կյանքը, բարձր գնահատել Չերնիշևսկուն ու Դոբրոլյուբովին, կապեր հաստատել ռուսական հեղափոխականների հետ։ Նա 1870 թվականին սիրով համաձայնվեց լինելու I Ինտերնացիոնալի ռուսական սեկցիայի ներկայացուցիչը Գլխավոր խորհրդում և ամեն կերպ օգնում էր նրա աշխատանքների կազմակերպմանը։ Մարքսը տեսնում էր, որ Ռուսաստանում հետզհետե ուժեղանում է հեղափոխական շարժումը, և աճում է հետաքրքրությունը գիտական կոմունիզմի նկատմամբ։ Հատկանշական է, որ արդեն 1872 թվականին գերմաներենից ռուսերեն թարգմանվեց ու հրատարակվեց Կապիտալի առաջին հատորը։ Դա ընդհանրապես Կ. Մարքսի գլուխ-գործոցի առաջին թարգմանությունն էր։ Իսկ 1882 թվակա-

նին թարգմանվեց ու հրատարակվեց Կոմունիստական կուսակցության մանիֆեստ-ը՝ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հատուկ առաջաբանով, որտեղ ասված էր. «Այժմ... Ռուսաստանը ներկայացնում է հեղափոխական շարժման առաջավոր ջոկատը Եվրոպայում» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, էջ 4)։ Այդպիսի հետևությունը բխում էր կյանքից, և Վ. Ի. Լենինն արդարացիորեն նշել է. «Մարքսն ու Էնգելսը լի էին ամենավառ հավատով ռուսական հզոր հեղափոխության և նրա համաշխարհային նշանակության նկատմամբ» (В. И. Ленин, ПСС, т. 15, стр. 247)։

Պլեխանովն իր «Աշխատանքի ազատագրություն» խմբի հետ միասին ծածանեց մարքսիզմի դրոշը Ռուսաստանում։ Ստեղծվեցին մարքսիստական խմբակներ նաև բուն Ռուսաստանում, մարքսիզմն այստեղ դարձավ գաղափարական-քաղաքական հոսանք և ունեցավ հարաճող ազդեցություն։ Դեռ 1885 թվականի ապրիլի 11(23)-ին Ֆ. Էնգելսը, Վ. Զասուլիչին գրած նամակում, բարձր գնահատելով պլեխանովյան խմբի գործունեությունը, նշել է. «Ես հպարտ եմ նրանով, որ ռուսական երիտասարդության շրջանում գոյություն ունի կուսակցություն, որն անկեղծորեն ու անվերապահ կերպով ընդունել է Մարքսի մեծագույն տնտեսական ու պատմական թեորիաները և վճռականորեն խզել է իր նախորդների բոլոր անարխիստական ու որոշ չափով սլավոնոֆիլական տրադիցիաների հետ ունեցած կապերը։ Ինքը՝ Մարքսը նույնպես հպարտ կլիներ դրանով, եթե մի քիչ էլ ապրեր» (Переписка К. Маркса и Ф. Энгельса с русскими политическими деятелями, М., 1951, стр. 309)։

Դժբախտաբար, Կ. Մարքսի կյանքի թելը կտրվեց 1883 թվականի մարտի 14-ին։ Ականավոր կոմունիստ-հեղափոխական Ֆ. Լեսները, Կ. Մարքսի աղջկան՝ Էլեոնորային, գրած ցավակցական նամակում, նշել է. «Նրա անունն ու ուսմունքը կապրեն հավերժ, քանի դեռ երկրի վրա գոյություն կունենան մարդիկ»։

***

Մարքսիզմի հանդես գալուց հետո պատմական ամեն մի նոր դարաշրջան նրան բերել է հաստատում ու հաղթանակ։ Եվ դա հասկանալի է ու օրինաչափ. «Մարքսի ուսմունքն ամենազոր է,— գրել է Վ. Ի. Լենինը,— որովհետև այն ճշմարիտ է» (Երկեր, հ. 19, էջ 4)։

Կարլ Մարքսի ու Ֆրիդրիխ Էնգելսի անմահ գործի հանճարեղ շարունակողը դարձավ Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Նրա անվան հետ է կապված Ռուսաստանում ազատագրական շարժման պրոլետարական փուլի սկիզբը, որը համընկավ նաև մաքսիզմի զարգացման լենինյան փուլի սկզբնավորման հետ։ Դա այն ժամանակաշրջանն էր, երբ կապիտալիզմը թևակոխեց իր զարգացման բարձրագույն ու վերջին՝ իմպերիալիզմի փուլը, որը ծայր աստիճան սրեց սոցիալական ու այլ հակասություններ և ժողովուրդների կյանքում օրվա հարց դարձավ սոցիալիստական հեղափոխությունը։ Չնայած իր համեմատական հետամնացությանը, Ռուսաստանը ևս թևակոխեց իմպերիալիզմի ստադիան, դարձավ սոցիալական հակասությունների հանգուցակետ ու հեղափոխական շարժման կենտրոն։ Լենինիզմը հանդես եկավ իբրև նոր դարաշրջանի մարքսիզմ։

Մարքսն ու Էնգելսն իրենց ուսմունքը համարել են ոչ թե դոգմա, այլ գործողության ուղեցույց։ Հենց այդ ստեղծագործական ոգով է համակված Լենինի գործունեությունը։ Նա մշտապես «խորհրդակցում» էր Մարքսի հետ։ Ժառանգելով նրա ուսմունքի բուն էությունը, սկզբունքները և, ելնելով պատմական նոր իրադրություններից, Լենինը զարգացրեց այդ ուսմունքը։

Վ. Ի. Լենինը մասնավորապես մշակեց ուսմունք նոր տիպի՝ մարքսիստական-պրոլետարական կուսակցության, նրա ստրատեգիական ու տակտիկական ղեկավարության մասին, վերլուծելով իմպերիալիզմի էությունը, նա բնութագրեց դրա պատմական տեղը, ստեղծեց սոցիալիստական հեղափոխության նոր տեսություն՝ սկզբում մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին հանճարեղ եզրակացությամբ, զարգացրեց պերմանենտ հեղափոխության մարքսյան թեորիան, ընդհուպ մինչև բուրժուադեմոկրատական հեղա-



փոխությունը սոցիալիստականի վերաճելու կոնկրետ պլանի հիմնավորումը, բացահայտեց հեղափոխության շարժիչ ուժերը, դրանց սոցիալ-պատմական դերը, բազմակողմանիորեն հիմնավորեց պրոլետարիատի դիկտատուրայի անհրաժեշտությունն ու նրա տարբեր ձևերի անխուսափելիությունը, նշեց ազգային ու ագրարային հարցերի լուծման ուղիները և այլն։

Այդ ամենի նախադրյալը կոմունիստական կուսակցության ստեղծումն էր. «Դաստիարակելով բանվորական կուսակցությունը,— գրել է Վ. Ի. Լենինը,— մարքսիզմը դաստիարակում է պրոլետարիատի ավանգարդը, որն ընդունակ է գրավելու իշխանությունը և ամբողջ ժողովրդին դեպի սոցիալիզմ առաջնորդելու, կազմակերպելու և ուղղություն տալու նոր հասարակարգին, լինելու բոլոր աշխատավորների ու շահագործվողների ուսուցիչը, ղեկավարը, առաջնորդը՝ նրանց հասարակական կյանքն առանց բուրժուազիայի և բուրժուազիայի դեմ կազմակերպելու գործում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 521)։ Լենինը տիտանական պայքար ծավալեց այդպիսի կուսակցության ստեղծման համար, և այն պսակվեց հաջողությամբ։ 1903 թվականին ստեղծվեց պատմության մեջ առաջին նոր տիպի կուսակցությունը՝ բոլշևիկյան-լենինյան կուսակցությունը։ Դա շրջադարձային կետ էր ռուսական ու միջազգային բանվորական շարժման մեջ։

Կուսակցությունը, զինված մարքս-լենինյան տեսությամբ ու հեղափոխական ծրագրով, կազմակերպեց Ռուսաստանի ժողովուրդների ազատագրական պայքարը, ստեղծեց բանվորագյուղացիական ամուր դաշինք և գլխավորեց աշխատավոր մասսաների պայքարը ցարիզմի ու կապիտալիզմի դեմ։ Նրա քաղաքականությունը ելնում էր հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքի և սուբյեկտիվ գործոնների ակտիվության զուգակցումից։ Այդպես էլ հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որը նշանավորեց մարդկության պատմության նոր դարագլխի՝ կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի դարագլխի, սկիզբը։

Եթե Մարքսն ու Էնգելսը սոցիալիզմը ուտոպիայից վերածեցին գիտության, ապա Լենինը ո՛չ միայն զարգացրեց, այլև իրականացրեց դա։ Հոկտեմբերի հաղթանակը մարքսիզմ-լենինիզմի տրիումֆն է և օպորտունիզմի, ռեֆորմիզմի ու ռևիզիոնիզմի կատարյալ կրախը։

Սովետական ժողովուրդն առաջինը հարթեց սոցիալիզմի կառուցման ուղին, մի ուղի, որը պատմության մեջ դեռ չէր հետազոտված և կապված էր մեծ դժվարությունների հաղթահարման հետ։ Այստեղ ևս վիթխարի ուժով փայլատակեց կոմունիստական կուսակցության առաջնորդի ու սովետական պետության հիմնադրի ստեղծագործական հանճարը։ Վ. Ի. Լենինը բացահայտեց կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի առանձնահատկություններն ու օրինաչափությունները և մշակեց ՍՍՀՄ-ում նոր հասարակության կառուցման պլանը, որը նախատեսում էր երկրի ինդուստրացում, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցում ու կուլտուրական հեղափոխություն։ Սոցիալիզմի կառուցման գլխավոր գործիքը պրոլետարիատի դիկտատուրան է՝ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ։

ՍՍՀՄ-ում արմատականորեն լուծվեց ազգային հարցը, և ստեղծվեց սովետական իրավահավասար ժողովուրդների եղբայրական ընտանիք, անխախտ ու հզոր բարեկամություն, որն իր կենսունակությունն ապացուցեց ինչպես խաղաղ շինարարության տարիներին, այնպես էլ պատերազմական ահեղ փորձությունների ժամանակ։ Միջազգային իմպերիալիզմի դավերն ու հարձակումները, դեմ առնելով սովետական պետական ու հասարակական սիստեմի անխորտակ ամրությանը, գլխովին ձախողվեցին։

Ներկայումս սովետական միասնական ժողովուրդն ապրում է զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում և, կատարելագործելով այն, անշեղորեն ընթանում է դեպի կոմունիզմ։ Այդ նոր դարաշրջանի նվաճումներն օրինաչափորեն ամրակայվեցին ՍՍՀՄ Սահմանադրության մեջ, որն իրավամբ համարվում է արդիականության մեծ խարտիա։ Մեր երկրի աշխատավորներն

իրենց համաժողովրդական պետության տերերն են, իրավահավասար քաղա-
քացիները:

Սովետական Միությունը համաշխարհային առաջընթացի ու միջազգային
խաղաղության հզոր հենուկն է: Նա ընթանում է համաշխարհային սոցիալիս-
տական սիստեմի ավանգարդում, կատարում իր ինտերնացիոնալ պարտքը և
օգնության ձեռք մեկնում իմպերիալիստական ագրեսիային զոհ դարձող ժո-
ղովուրդներին: Անկասելիորեն խորանում է աշխարհի արմատական վերափոխ-
ման պրոցեսը, նեղանում են կապիտալիզմի շրջանակները և ընդլայնվում սո-
ցիալիզմի ազդեցությունը:

Սոցիալիզմը և առավելապես կոմունիզմը դինամիկ հասարակություն է:
Դրա անշեղ զարգացումը կրում է գիտակցական բնույթ, իրականացվում է գի-
տականորեն հիմնավորված ու պլանավորված սոցիալական ռեֆորմների, խո-
շոր տնտեսական ու կուլտուրական վերափոխումների միջոցով, որոնք արտա-
հայտում են հասարակական առաջընթացի օբյեկտիվ պահանջները: Նման վե-
րափոխումներն իրենց որակական բովանդակությամբ ու հետևանքներով խորն
են ու նշանակալի և պայմանավորված են կոմունիստական հասարակական-
տնտեսական ֆորմացիայի բնույթով:

Մարքսը մարդկության մեծագույն մտածողներից էր: Նա իր հանճարը,
հեղափոխական վիթխարի կորովը նվիրաբերեց աշխատանքի մարդկանց ա-
ղատագրմանը: Կարլ Մարքսի մեծ ուսմունքը՝ հարստացած լենինյան անմահ
գաղափարներով, փարոսի նման լուսավորում է բանվոր դասակարգի, ողջ աշ-
խատավորության սոցիալական ու ազգային ազատագրության պայքարի ուղին:
Նրա վերակերտիչ դերը իր փայլուն մարմնավորումն է գտել սոցիալիստական
համագործակցության երկրների պատմական վիթխարի նվաճումներում:

Սովետական մարդիկ՝ պատմության մեջ ամենաարդարացի ու հումանիս-
տական հասարակության կերտողները, իրավամբ, Մարքսի, Էնգելսի, Լենինի
ժառանգորդներն են, նրանց մեծ գործի շարունակողները: Նոր կյանքի կառուց-
ման մեր փորձն իրոք ունի ո՛չ միայն ազգային, այլև միջազգային վիթխարի
նշանակություն: Այդ վերստին հաստատվեց Մեծ Հոկտեմբերի 60-ամյա հո-
բելյանի տոնակատարության ու ՍՍՀՄ Նոր Սահմանադրության ընդունման
ժամանակ:

«Մարքսիզմ-լենինիզմի ուժը,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— մշտա-
կան ստեղծագործական զարգացումն է»: Հիրավի, մարքսիզմ-լենինիզմը կեն-
դանի, ստեղծագործական ուսմունք է, որը մշտապես հարստանում է ՍՄԿԿ,
միջազգային կոմունիստական շարժման մյուս ջոկատների գործունեությամբ,
սոցիալիստական-կոմունիստական շինարարության փորձով, կապիտալի աշ-
խարհի բանվորների հեղափոխական պայքարով ու ճնշված ժողովուրդների
ազատագրական շարժմամբ: Այդ ուսմունքը դարձել է արդիականության շար-
ժիչ ուժը:

---

# ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԸ

Հ. Ս. ՋԱՔԱՐՅԱՆ
Տնտեսագիտության թեկնածու, դոցենտ

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման պրոբլեմը համարեց սովետական էկոնոմիկայի համամասնական զարգացման գլխավոր պայմաններից մեկն ինչպես տասներորդ հնգամյակում, այնպես էլ հետագա տարիներին:

ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թվականի հոկտեմբերյան պլենումում Լ. Ի. Բրեժնևը նշեց. «...ժողովրդագրական գործոնների՝ պատերազմի հեռավոր հետևանքների հետ առնչված գործողությունը 80-ական թվականներին կհասցնի աշխատունակ բնակչության ներհոսի խիստ կրճատման:

Ստեղծված իրավիճակն ամենայն սրությամբ է դնում ...աշխատանքային ռեսուրսների է՛լ ավելի ռացիոնալ օգտագործման խնդիրը»:

Ի դեպ, այդ հարցը միշտ էլ եղել է կարևորագույններից մեկը սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում: Դեռևս 1931 թվականի հունվարի 31-ին ՍՍՀՄ Կենտգործկոմի ընդունած որոշման մեջ նշված է՝ «տնտեսական մարմինների և ձեռնարկությունների ղեկավարների վրա... անհատական պատասխանատվություն դնել աշխատուժի ռացիոնալ օգտագործման համար» (տե՛ս Директивы КПСС и Советского правительства по хозяйственным вопросам. т. 2, стр. 223):

Այսօր էլ մեր կուսակցությունն այդ հարցը դնում է ամբողջ սրությամբ, քանի որ «Ինչքան էլ որ մեծանա մեր հասարակության հարստությունը, խնայողությունը մնում են ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, 1976, էջ 67): Մյուս կողմից՝ հարցի կարևորությունը պայմանավորված է նաև Հայրենական պատերազմի տարիներին մարդկային մեծ կորուստների հետևանքով բնակչության սեռահասակային կառուցվածքի խախտումով, որը մոտակա տարիներին հասցնելու է աշխատանքային ռեսուրսների աճի տեմպերի դանդաղեցմանը: Եվ այսօր էկոնոմիկայի կայուն և համամասնական զարգացման գործում ավելի քան երբեք մեծացել է աշխատանքի արտադրողականության բարձրացման դերն ու նշանակությունը: Հաշվի առնելով ժողովրդագրական ներկայիս իրավիճակը, երկրում հսկայական գործունեություն է ծավալվում աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումն ապահովելու և աշխատանքի արտադրողականության աճի ռեզերվները մոբիլիզացնելու նպատակով:

Աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման պրոբլեմն առանձնակի կարևորություն ունի Հայաստանի համար: Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ մեր հանրապետությունում արդյունաբերության և շինարարության մեջ 1976 թ. բանվորական կադրերի հոսունությունը զգալի տոկոս է կազմել: Վիճակը էապես չի փոխվել նաև 1977 թվականին: Թերություններ կան նաև միջին և փոքր քաղաքներում ու գյուղական վայրերում կադրերի

# ԷԿՈԼՈԳԻԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄԻ ԼՈՒԾՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀՐԱՏԱՊ ՀԱՐՑԵՐ*

**Բ. Վ. ՄԵՀՐԱԲՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

*ԲՆՈՒԹՅԱՆ ԱՆՍԻՍՏԵՄ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ մեր ժամանակներում որոշակի լարվածություն է ստեղծում երկրագնդի մասշտաբով։ Ավելին, այն կրում է կենդանի բնության բոլոր մակարդակներում անուղղելի կերպափոխության վտանգ և կարող է աղետալի ազդեցություն թողնել ոչ միայն բնության, այլև նրա «բարձրագույն ծաղկի»՝ մարդու վրա։ Կենդանի սիստեմները գտնվում են մարդկային ընդհանրական գործունեության (արտադրական և ոչ արտադրական) հարաճուն ճնշման տակ, որը չի ենթարկվում որևէ էկոլոգիական չափանիշի։*

*Հրատապ լուծում պահանջող էկոլոգիական պրոբլեմները հրամայաբար թելադրում են «բնություն—հասարակություն» սիստեմի երկու ենթասիստեմների («բնություն» և «հասարակություն») փոխազդեցության լավագույն ուղիների որոնման անհրաժեշտություն, որի վրա և բևեռվում է ժամանակակից գիտության ուշադրությունը։ Սակայն այսօր արդեն նկատելի է ոչ ճիշտ մոտեցում այդ պրոբլեմի իմացաբանական խնդիրների նկատմամբ. հանգամանք, որը կարող է խեղել պատկերացումները հասարակության ու բնության փոխազդեցության օպտիմալացման հարցերի լուծման հեռանկարների մասին, հակաէկոլոգիական «սպի» թողնել մարդկության նյութական ողջ գործունեության վրա։*

*Ուստի և պրակտիկ գործունեության էկոլոգիական ճշգրտմանը, բնությունը նյութական կուլտուրայի մեջ ներառնելու ռեալ-վերափոխիչ պրոցեսին անհրաժեշտ է նախադրել իմացաբանական ճշգրտում, վերաիմաստավորել էկոլոգիական գիտելիքների ոլորտում ավանդական դարձած մի շարք գաղափարներ և հիմնադրույթներ։ Գիտության նպատակը պետք է լինի փոխարինել դրանք սկզբունքորեն նոր գաղափարներով ու հիմնադրույթներով, որոնց գործադրմամբ հնարավոր լինի ուղղակի կամ միջնորդաբար ազդել սոցիալական պրակտիկայի ընթացքի վրա՝ հանուն բնաառողջապահական խնդիրների լուծման։ Սոցիալական և գիտատեխնիկական արմատական վերափոխումներն անհրաժեշտ է համապատասխանեցնել էկոլոգիական շահերին։*

*Ամենից առաջ անհրաժեշտ է հաղթահարել ավանդական այն ըմբռնումը, թե էկոլոգիայի առարկան և օբյեկտը «զուտ» կենսաբանական են։ Մարդը մարդկայնացնում է վայրի բնությունը՝ երկրագնդի մասշտաբով։ Նրա գործունեությունն օբյեկտիվորեն ներհյուսվում է էկոլոգիայի պրոբլեմներին։ Կենդանի սիստեմների գոյությունը, դրանց և միջավայրի փոխհարաբերությունները, կրելով էկոլոգիապես անսիստեմ գործունեության հարաճուն ճնշումը, այլևս չեն կարող գտնվել մարդու ներգործությունից դուրս։ Հետևաբար, էկոլոգիական պրոբլեմները պետք է ուսումնասիրվեն՝ կապված մարդու՝ կենդանի ու անկենդան բնության երևույթների մեջ առարկայացած գործունեության հետ։ Դրանք*

* *Տպագրվում է հարցադրման կարգով։ ԽՄԲ.։*



*կլուծվեն միայն մարդու ակտիվ գործունեության էկոլոգիական ճշգրտման միջոցով, որը ենթադրում է բնության անսիստեմ սպառումը փոխարինել դրա խնայողաբար օգտագործմամբ, պահպանելով, հնարավորության դեպքում՝ ընդլայնելով այն։ Դա անհրաժեշտ է, որպեսզի երկրակենսաբանական կառուցվածքում պահպանվի նյութի և էներգիայի հաշվեկշիռը՝ հօգուտ մարդու, նրա կենսասոցիալական ամբողջության և ակտիվության։*

*Հարկ է հաղթահարել նաև պատրանքային, այդ իսկ պատճառով անիրագործելի այնպիսի կոնցեպցիաների գոյությունը, ըստ որոնց էկոլոգիական պրոբլեմներն «ամբողջ ծավալով» հնարավոր է լուծել առանձին օբյեկտներին և արտադրական գործունեության առանձին կողմերին վերաբերող լոկալ ձեռնարկումներով։ Նման մոտեցմամբ անհնար է մշակել ու իրագործել տարածքի էկոլոգիական պոտենցիալի պահպանման, վերականգնման ու ընդլայնման տակտիկան ու ստրատեգիան, որոշել էկոսիստեմի վրա մարդկային գործունեության թույլատրելի ներգործության սահմանները։ Այս եղանակով անհնար է բացահայտել բնության մեջ լարվածության առաջացման խոր պատճառները, բարելավել կենսաբանական տեսակների առաջացման ու բազմացման պայմանները։ Միաժամանակ անհնար է նաև ինդուստրիալ արտադրության ինտենսիվ զարգացման ընթացքում լուծել «մարդ» և «բնություն» ենթասիստեմների ներդաշնակ փոխազդեցության ապահովման խնդիրները։*

*Ելնելով կենդանի սիստեմների, ինչպես և մարդու արմատական շահերից, անհրաժեշտ է հրաժարվել էկոլոգիայի պրոբլեմներում գիտատեխնիկական առաջընթացին հատկացվող դերի պատրանքային ըմբռնումներից, որոնց համաձայն առանձին ճյուղերում տեխնիկական ու տեխնոլոգիական «բռնկումները» համարվում են գիտատեխնիկական հեղափոխության արտահայտություն, էկոլոգիական պրոբլեմների լուծման գրեթե ավտոմատ միջոց։ Գիտատեխնիկական հեղափոխությունն ամենից առաջ պետք է դիտել որպես հասարակական կենսագործունեության բոլոր մակարդակներն սկզբունքորեն վերափոխող երևույթ։ Անսիստեմ ընդհանրական գործունեությունն այն փոխարինում է սիստեմաստեղծ պրոցեսով։ Այդ, իր հերթին, ներդաշնակություն հաղորդելով հասարակության ու բնության բազմաբովանդակ, բազմաշերտ հարաբերություններին՝ հարաբերական հավասարակշռություն է ապահովում մոլորակի էկոլոգիական հաշվեկշռում, պահպանում կենդանի սիստեմների ինքնավերարտադրման պրոցեսը։*

*Իրականության մեջ սերտորեն կապված լոկալ-տարածքային, միջտարածքային և գլոբալ բնաառողջապահական շահերից ելնելով՝ անհրաժեշտ է վերանայել սոցիալական գործողության բոլոր սուբյեկտների վերաբերմունքը տեխնոլոգիական գործունեության պրոբլեմների նկատմամբ։ Լինելով բնության վրա հասարակության ներգործման հիմնական միջոց՝ տեխնոլոգիական գործունեությունը պետք է համապատասխանեցվի ո՛չ միայն սոցիալ-կուլտուրական ընթացիկ պահանջներին, այլև բնական միջավայրի, մարդու, նրա առողջության արմատական շահերին։ Սակայն դրան պետք է նախորդի գաղափարական ոլորտի վերակառուցումն ու գիտակցումն այն բանի, որ անհրաժեշտ է տեխնոլոգիական գործունեության հետագա զարգացման ուղիները որոշելիս գլխավոր չափանիշներից մեկը համարել կենդանի սիստեմների արմատական շահերը։ Պետք է նկատի ունենալ, թե մշակվող ու ներդրվող տեխնոլոգիաներն ի՛նչ չափով են համապատասխանում ներկա և գալիք սերունդների առողջության պահպանմանն ու բարելավմանը։ Միաժամանակ հարկ է նշել, որ տեխնոլոգիական գործունեության էկոլոգո-հիգիենիկ ճշգրտումը կարելի է իրականացնել հենց այդ գործունեության ֆակտորների՝ սոցիոկուլտուրական պրոցեսների, էկոնոմիկայի, գիտության, կրթության և այլնի զարգացման ընթացքի վրա ներգործման ձևերի, դրանց տեխնոլոգիայի կատարելացմամբ, ենթարկելով դրանք բնաառողջապահական շահերին։ Խոսքը շրջակա միջավայր ընկնող թափոնների չեզոքացման, մաքրման կայանների ընդլայնվող կիրառման, բնության անվերականգնելի պաշարների նկատմամբ հոգածո վերաբերմունքի, պարարտանյութերի, թունաքիմիկատների խելացի օգտագործման*

մասին է։ Ինդուստրիալ արտադրության թռիչքաձև զարգացման պայմաններում դրանք դառնում են անբավարար։ Այսպես, թափոնների օգտագործման սկզբնական ձևերը պետք է փոխարինվեն բնական պրոցեսներին նմանվող տեխնոլոգիաներով. այդպիսով տեխնոլոգիական գործունեությունը «կպատճենի» բնական պրոցեսներից, կհանդիսանա բնության և հասարակության ներդաշնակ փոխազդեցության հիմքը։

Էկոլոգիայի ասպարեզում անհրաժեշտ է կիրառել հետազոտության սիստեմային մեթոդը, որն էկոլոգիական պրոբլեմների լուծման ո՛չ միայն անհրաժեշտ, այլև միակ հնարավոր միջոցն է։ Միայն այդ եղանակով կարելի է վերհանել կոնկրետ էկոսիստեմի տարրերի ու կապերի ողջ բազմազանությունը, ներառյալ մարդու ընդհանրական գործունեությունը, մշակել բնական ու հասարակական գիտությունների ինտեգրատիվ փոխազդեցության մեխանիզմ, ապա՝ գտնել գիտության և սոցիալական պրակտիկայի փոխազդեցության լավագույն ձևերն ու միջոցները՝ հօգուտ բնության ու մարդու։

Էկոլոգիական պրոբլեմները լուծելիս, մասնավորապես, հասարակության և բնության փոխազդեցության հարցերն ուսումնասիրելիս, մեր կարծիքով, անհրաժեշտ է հաղթահարել «ակադեմիզմը », պրակտիկայից կտրված անհիմն «տեսականացումը», չափազանց հրապուրվելն այնպիսի «գերտեսություններով», ինչպես՝ «սոցիոէկոլոգիան», «նոոգենիկան» և այլն։ Բնության և հասարակության փոխազդեցության ձևերի մասին նման գերտեսությունների մերժումը չի նշանակում ժխտել էկոլոգիական պրոբլեմների լուծման ժամանակ միջառարկայական առնչությունների իմացաբանական հարցերը։

Էկոլոգիական պրոբլեմները ծագել են մարդու անսիստեմ գործունեության, բնական միջավայրի վրա նրա հակաէկոլոգիական ներգործության հետևանքով։ Այդ իսկ պատճառով, էկոլոգիական պրոբլեմների հետ կապված գիտությունների ինտեգրացման հարցերը պետք է դիտել իբրև բնական, տեխնիկական և հասարակական գիտությունների սիստեմային փոխազդեցության մեթոդաբանական խնդիրներ։ Գիտությունների ինտեգրացման միտումը, բնական, տեխնիկական և սոցիալական գիտությունների տվյալների, ինչպես և մաթեմատիկայի ու կիբեռնետիկայի հնարավորությունների համակցումը, բարդ սիստեմների հետազոտության ինֆորմացիոն-տեխնիկական ապահովումը՝ կնպաստեն օբյեկտի (հասարակության և բնության փոխազդեցության) էկոլոգիական մոդելների կառուցմանն ու ուսումնասիրությանը։ Էկոլոգիական պրոցեսների մոդելավորման, դրանց սիստեմային վերլուծության նպատակը պետք է լինի բնառողջապահական ստրատեգիական խնդիրների լուծումը։ Սակայն այդ չի նշանակում, թե պետք է հրաժարվել առանձին հարցերի մասնակի լուծումներից, մարդկային գործունեության կոնկրետ ձևերի ճշգրտումից, էկոսիստեմի որևէ բաղադրամասի վիճակի բարելավումից։ Ավելին, դրանք ենթադրում են մարդկանց ռեալ հնարավորություններին համապատասխան գործողություններ՝ տարածության և ժամանակի ամեն մի կոնկրետ հատվածում։

Այնուամենայնիվ, հարկ է վերստին շեշտել, որ ժամանակակից էկոլոգիական պրոբլեմները չեն կարող լուծվել «ողջ ծավալով», տարանջատ, այլ կուռ, ընդհանուր ստրատեգիական պլանով, որին պետք է նախորդեն պետական, դրա հիման վրա էլ՝ միջազգային բնապահպանական ծրագրերը, որոնք պիտի համապատասխանեն տարածքային, միջտարածքային և ողջ մոլորակի շահերին։ Ընդ որում, տարածքների երկարաժամկետ զարգացման բոլոր ծրագրերը, դրանց կապերն ու հարաբերությունները պետք է հիմնվեն շրջակա միջավայրի, դրա վրա մարդու ազդեցության չափերի և բնութագրերի խոր ու համակողմանի, մշտական ուսումնասիրության վրա։ Այդպիսի վիթխարի խնդրի լուծման համար անհրաժեշտ է օգտագործել գիտության ու նորագույն տեխնիկայի ընձեռած հնարավորությունները։

Էկոլոգիական հրատապ պրոբլեմների գիտական լուծման մեջ կարևոր է բնապահպանական միջոցառումների տարանջատության հաղթահարումը, տարանջատում, որը մասամբ հատուկ է նաև մեր երկրի բնության պահպանության պրակտիկային։ Այդ երևույթի հիմքն արտադրական գործունեության ճյուղային կառուցվածքի և էկոլոգիական շահերի տարածքային բնույթի հակասությունն է։ Ըստ ճյուղային հատկանիշի իրականացվող տնտեսական գործունեությունը, արտադրամիջոցների անհամաչափ բաշխման պայմաններում, համեմատաբար, սահմանափակ տերիտորիաներում քաղաքների ու բնակչության կենտրոնացման աղբյուրն է։ Գործունեության նման ձևը մեծացնում է էկոլոգիական ծանրաբեռնվածությունը։ Բնապահպանական խնդիրներին հատկացվող միջոցները հիմնականում առանձնացվում են ըստ ճյուղային հատկանիշի, որը դժվարացնում է տարածքում տեղաբաշխված ձեռնարկությունների նպատակային գործունեությունն այդ բնագավառում։ Այդ հակասության լուծման ուղիների հայտնաբերումը «մարդ-բնություն» սիստեմում ներդաշնակ փոխազդեցության միջոցները հետազոտող գիտությունների առաջնահերթ խնդիրներից է։

Անհրաժեշտ է տարբեր ճյուղերի գիտնականների արդյունավետ համագործակցությամբ ստեղծել մարդու ընդհանրական գործունեության էկոլոգացման ուղիների վերաբերյալ նոր գաղափարների, սիստեմային-տարածքային բնառողջապահական հետազոտությունների համալիր ծրագրեր։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում նույնչափ անհրաժեշտ է գիտնականների և կառավարչական ոլորտի աշխատողների համագործակցությունը՝ էկոոլորտը մարդու կենսասոցիալական պահանջմունքներին լավագույն ձևով հարմարեցնելու արդյունավետ եղանակներ ու միջոցներ որոնելու ասպարեզում։

Էկոլոգիական պրոբլեմների արդյունավետ լուծման նպատակով անհրաժեշտ է հերքել ինչպես «էկոլոգիական հոռետեսությունը»— երկրաբնակների դատապարտվածության այն քարոզը, որի միակ հակոտնյան տիեզերական ուղիներում փրկություն որոնելն է, նույնպես և այն տեսակետները, թե էկոլոգիական պրոբլեմները կարելի է լուծել սոցիալական կարգից անկախ։ Նման տեսակետների կողմնակիցները հիմնականում չեն տեսնում էկոլոգիական լարվածության ու մարդկությանն սպառնացող վտանգի դեմ միջազգային մասշտաբով պայքարելու հնարավորությունները։ Ինչպես գիտենք, բնության մեջ լարվածության առաջացումը հետևանք է մարդկային գործունեության այն փուլի, որը Կ. Մարքսը որակել է որպես մարդկության «նախապատմություն» կամ իսկական պատմության սահմանագիծ, ուր մարդկությունը մուտք է գործում հասարակական հարաբերությունների մեծ վերափոխումներով, մարդկության ինքնարտահայտման այնպիսի նախադրյալով, որով փորձնականորեն կապացուցվի նրա՝ ո՛չ միայն սոցիալական, այլև էկոլոգիական հակասությունները լուծելու ունակությունը։ Սակայն այս վերջին հանգամանքն այսօր չի վերացնում գաղափարական անհաշտ պայքար մղող երկրների միջազգային համագործակցության հնարավորությունները մի շարք, այդ թվում և էկոլոգիայի ասպարեզներում։

Ժամանակն է դիմելու գործնական քայլերի՝ հանուն մարդկային գործունեության էկոլոգիական վերակառուցման՝ այն ենթարկելով մարդու բնառողջապահական նպատակներին։ Անհրաժեշտ է «էկոլոգիական պարզունակ լավատեսությունից» անցնել բուռն գիտական գործունեության ծավալման՝ հանուն բնության պահպանման և մարդու առողջության։

Վերոհիշյալ սկզբունքային նկատառումների վրա է հիմնված Հայկական ՍՍՀ տարածքում էկոլոգիական հետազոտությունների կազմակերպման և անցկացման ծրագիրը։ Այն մշակվել է Երևանի բժիշկների կատարելագործման պետական ինստիտուտի փիլիսոփայության ամբիոնի կողմից, ՀՍՍՀ ԳԱ մի շարք ինստիտուտների, Երևանի պետական համալսարանի և ճյուղային գիտահետազոտական ինստիտուտների գիտնականների հետ մեկտեղ և արժանացել է հանրապետության առողջապահության մինիստրության բժշկական գիտխորհրդի, ինչպես նաև միութենական մի շարք գիտական ու վարչական հիմնարկությունների հավանությանը։ Մեր արծարծած խնդրի գործնական լուծումը սպասում է պետական վերադաս մարմինների հավանությանն ու կոնկրետ որոշմանը։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԸ ՄԱՐԴՈՒ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԶՈՐ ԳՈՐԾՈՆ

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Հանրակրթական դպրոցների սովորողների ուսուցումը, դաստիարակությունը և աշխատանքի համար նրանց նախապատրաստումն է՛լ ավելի կատարելագործելու մասին» որոշման մեջ (1977 թ. դեկտեմբեր) նշված է, որ «...շատ շրջանավարտներ կյանք են մտնում առանց աշխատանքային պատշաճ նախապատրաստության, բավարար պատկերացում չունեն հիմնական մասսայական պրոֆեսիաների մասին և դժվարություններ են կրում ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի անցնելիս» («Սովետական Հայաստան», 29 դեկտ. 1977 թ.):

Ուստի, շատ կարևոր է, որ կյանք մտնող պատանին, աղջիկը նախապատրաստված լինեն ո՛չ միայն շարունակելու իրենց կրթությունը, այլև աշխատելու մեր ժողովրդական տնտեսության որևէ բնագավառում, արտադրության մեջ: Իսկ արտադրական ձեռնարկությունները, իրենց հերթին, պետք է դառնան մասնագիտական կոփվածության դարբնոց, ամեն կերպ օգնեն երիտասարդությանն ավելի լավ տիրապետելու ընտրած մասնագիտությանը: Այս ասպարեզում զգալի գործ է կատարել «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումը:

Արտադրամիավորման գլխամասային գործարանը՝ Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինականը, հսկա մի գործարան-քաղաք է՝ իր փողոցներով, ծառուղիներով, պուրակներով, սպորտային համալիրով, պոլիկլինիկայով, արդյունաբերական ու սպառման ապրանքների խանութներով, սպասարկման ոլորտի այլ օբյեկտներով, արտադրական հսկա մասնաճյուղերով: Գործարանը թողարկում է 200-ից ավելի արտադրատեսակներ և առաքում ինչպես ՍՍՀՄ տարբեր տնտեսական շրջանները, նույնպես և արտասահմանյան տասնյակ երկրներ: Արտադրական այս վիթխարի ձեռնարկությունում իրենց աշխատանքային կենսագրությունն են սկսում հազարավոր երիտասարդներ: Այստեղ է կոփվում նրանց բնավորությունը, այստեղ են նրանց ընձեռվում մասնագիտական կողմնորոշման լայն հնարավորություններ:

Աշխատանքային առօրյան սկսված է. յուրաքանչյուրն իր աշխատատեղում է: Հատուկենտ ուշացողներին անմահացնում էին լուսանկարիչները՝ երգիծական պատի թերթի հաջորդ համարում զետեղելու նպատակով: Մի պահ մտածում ես՝ 5—10 րոպեի պատճառով հարկ կա՞ արդյոք նման խստության: Ըստ էության, կարգապահությամբ է պայմանավորվում անհատի վերաբերմունքն իրեն վստահված գործի, աշխատանքային կոլեկտիվի նկատմամբ: Աշխատանքային կարգապահությունը չի կարելի խախտել. ներկա տեխնոլոգիական պրոցեսներն այնպես փոխկապակցված են արտադրական ընդհանուր շղթայում, որ խաթարումը մի օղակում խափանում է ամբողջի գործունեությունը, ի վերջո՝ ողջ միավորման աշխատանքի նորմալ ընթացքը:

Պատրա՞ստ է արդյոք երիտասարդը նման ռեժիմին: Ի՞նչ խոսք, դպրոցական տարիներին դասերին պատրաստ և ժամանակին ներկայանալու անհրաժեշտությունը, օրվա ռեժիմի պահպանումը սերմանել են կարգապահական որոշակի նորմեր, ընտանիքը ևս որոշակի դեր է խաղացել: Բայց մի բան է դպրոցը, բոլորովին այլ՝ արտադրական ձեռնարկությունը, որի տեխնոլոգիական ռեժիմին ու ռիթմին նախապես վարժված չէ երիտասարդը: Գործարանում աշխատում են ավելի քան 4.000 երիտասարդներ ու կոմերիտականներ: Տարեցտարի ավելանում է ընդունվող դպրոցաավարտների թիվը:

Ի՞նչ ակնկալություններ, հեռանկարներ ունեն նրանք: Կան երիտասարդներ, որոնք լավ են պատկերացնում արտադրությունը, ունեն մասնագիտական որոշակի ձիրք ու հակում և այդ են ընտրում իրենց հետագա գործունեության ասպարեզ: Գործարան են գալիս նաև շրջանավարտներ, որոնք արտադրությունն այնքան էլ լավ չեն պատկերացնում, բայց ցանկանում են ձեռք բերել մասնագիտություն՝ հետագայում, առանց արտադրությունից կտրվելու բուհ ընդունվելու մտադրությամբ: Գործարան են գալիս և այն շրջանավարտները, որոնց այդ տարի չի



հաջողվել ընդունվել բուհ և ցանկանում են համապատասխան ստաժ ունենալ, հաջորդ տարին ընդունելության քննություններին կրկին մասնակցելու նպատակով (քանի որ բուհերում ընդունելության քննություններին մասնակցելու իրավունք տրվում է առնվազն վեցամսյա աշխատանքային ստաժ ունեցողներին): Գործարանններում աշխատում են նաև պրոֆտեխնիկական ուսումնարանների սաները, մասնագիտական կամ հանրակրթական միջնակարգ կրթություն չունեցողները, ինչպես և զինծառայությունից վերադարձած երիտասարդները. վերջիններից շատերը ձգտում են արտադրությունից չկտրված ավարտել նաև բարձրագույն ուսումնական հաստատությունը:

Այսպիսով, գործարանն ստանում է բավական բարդ, տարասեռ մի զանգված, որից պետք է թրծի կոլեկտիվի իսկական անդամներ: Ուստի, պետք է ուսումնասիրել երիտասարդների նախասիրությունները, հոգեկան ու ֆիզիկական առանձնահատկությունները, պատրաստականությունը և այլ հատկանիշներ, որոնք հնարավորություն կընձեռեն կուսակցական, վարչական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին՝ ավելի լավ կազմակերպելու երիտասարդության համակողմանի դաստիարակության գործը:

Սովորաբար լինում է այսպես. գործարան ընդունված երիտասարդն իր առաջին քայլերն անում է փորձառու վարպետի հսկողությամբ, ինչպես ասում են՝ նրա «ձեռքի տակ»: Սկսվում է բոլորովին նոր՝ վարպետ—աշակերտ փոխհարաբերության շրջանը: Նոր բանվորը պատրաստվում է նյութական արժեքներ ստեղծելու: Այստեղ արդեն շատ կարևոր է ուսուցող վարպետի դերը: Նրա միջոցով է նորաթուխ բանվորը ծանոթանում հաստոցին, ավտոմատ սիստեմներին, տեխնոլոգիական պրոցեսի նրբություններին, ժամանակակից վերափոխումների էությանը: Սկսվում է երիտասարդ բանվորի մասնագիտական ու հոգեկան թրծման պրոցեսը, ձևավորվում են նրա բնավորության նոր գծերը— կոլեկտիվիզմ, պահանջկոտություն, պատասխանատվություն իր և ընկերոջ, ողջ կոլեկտիվի աշխատանքի համար, բծախնդրություն սեփական արտադրանքի նկատմամբ: Աստիճանաբար դրսևորվում են և բանվորի մասնագիտական հակումները, նրա ունակություններն ու հմտությունը: Այս ընթացքում անգնահատելի են վարպետի դերը, հեղինակությունը: Երիտասարդն սկզբնական շրջանում ընդօրինակում է վարպետի՝ իր «արտադրական ուսուցչի» աշխատանքի ձևն ու ոճը, մեթոդները: Եվ զուր չեն ասում՝ ինչպիսին վարպետն է, նույնպիսին կլինի և աշակերտը:

Հույժ կարևոր այս գործում ավելի է մեծանում վարպետի սոցիալական պատասխանատվությունը, գիտակցումն այն բանի, որ ինքը վճռական դեր է խաղում երիտասարդի կյանքում ո՛չ միայն նրան հմուտ բանվոր դարձնելով, այլև դաստիարակելով իբրև մարդ: Ահա թե ինչու նա պետք է ջանա համակել սկսնակին աշխատասիրությամբ, ընկերասիրությամբ, մարդասիրությամբ: Վարպետ քաղաքացու այս պարտականությունը կատարելիս, անշուշտ, նրան պետք է օգնեն գործարանի ղեկավարությունը, կուսակցական և հասարակական մյուս կազմակերպությունները:

Բարդ, դժվարին է այդ աշխատանքը: Մասնագիտությանը խորապես տիրապետող վարպետը հանդիպել է «կյանքին անտեղյակ» մի անհատի, որը միշտ չէ, որ կարողանում է հարմարվել, ուշիմ լինել նոր միջավայրում, մերթ կողքին բանող վարպետների հմուտ շարժումները, մերթ ողջ մթնոլորտի անսովորությունն են շեղում նրա ուշադրությունը, կամ միտքն է սավառնում բոլորովին այլ տեղեր... Հարկ է սթափվել, հիշել, որ դու՝ երեկվա անհոգ պատանիդ, արդեն պարտավոր ես աշխատավայրում, աշխատանքի ժամին ենթարկվել որոշակի կարգ ու կանոնի...

Երիտասարդը, պատանին, որքան էլ ունենա որոշակի, հաստատուն բնավորություն, բարոյակամային հատկանիշներ, այնուամենայնիվ դեռևս անկայուն է, չկազմավորված: Բավական է որևէ անզգույշ արտահայտություն, կամ մասնագիտության ընտրության քամահրում հարազատների կամ գործընկեր վարպետների կողմից, որպեսզի խաթարվի դեռևս լիովին չձևավորված կարծիքը աշխատանքային հարաբերությունների, մթնոլորտի մասին, հիասթափվի պատանին կամ աղջիկը և թողնի գործարանը, հեռանա առանց ետ նայելու: Փորձառու վարպետները պարտավոր են հոգատար լինել նորեկների հանդեպ, հաղորդել նրանց աշխատանքային ավանդույթները, օգնեն հաղթահարելու դժվարությունները...

Երկար է պատանու ճանապարհը մինչև որոշակի մասնագիտության տիրապետումը: Ընտանեկան, աշխատանքային ու ընկերական հարաբերություններն իրենց դրոշմն են դնում նորաթուխ բանվորի թե՛ կենսագրության և թե՛ բնավորության, բարոյակամային հատկանիշների վրա: Թերևս պատանիների մի մասը չի ցանկանում անցնել ինքնուրույն աշխատանքի, անմիջական պատասխանատվություն չստանձնելու համար: Բայց կյանքն իրենն է պահանջում. ամեն մի սկիզբ ունի իր էվոլյուցիան. աշակերտն անհրաժեշտորեն պետք է հմտանա իր ընտրած մասնագիտության մեջ, վարպետ դառնա:

Եվ այդ ամենը հարկ է այնպես անել, որ նրա հոգում չմարի սովորելու, մշտապես առաջ գնա-

լու ձգտումը: Նրա նշանաբանը պետք է լինի՝ վաղն իմանալ ավելի շատ, քանի այսօր, վաղն աշխատել ավելի լավ, քան այսօր: Չէ՞ որ այսօրվա աշակերտը վաղվա վարպետն է, իր նման շատ աշակերտների վաղվա «արտադրական ուսուցիչը»: Արտադրության շատ ու շատ որակյալ մասնագետներ ինչպիսի՜ երախտագիտությամբ են հետագայում հիշում, ինչպիսի՜ սիրով են խոսում իրենց առաջին վարպետի մասին:

Ահա թե ինչ պատմեց էլեկտրամեքենաշինական գործարանի № 31 արտադրամասի բարձր կարգի փականագործ վարպետ Գասպարյան Ազատը, որը Երևանի Թումանյանի անվան դպրոցն ավարտել է սրանից 20 տարի առաջ:

Երբեք չեմ մոռանա աշխատանքի իմ ուսուցիչ ընկեր Մկրտչյանին, որը մեզ առաջինը տեղեկացրեց գործարանային կյանքին, ծանոթացրեց փականագործի, խառատի, հղկողի մասնագիտությանը: Շատ բան էին տալիս մեզ գործնական աշխատանքի ժամերը ավտոպահեստամասերի գործարանի գործիքաշինական արտադրամասում, իմտացնում, կապում այդ արհեստներին: Երբ դպրոցն ավարտեցի, շատ մայրերի պես իմ մայրն էլ ցանկանում էր, որ շարունակեմ կրթությունս որևէ բուհում: Բայց դեռ քայլել չհասցրած, ես կորցրել էի հորս և վաղ էի տեսել ու հասկացել, թե ի՞նչ զրկանքների գնով, դժվարությամբ էր մայրս պահում, կրթություն տալիս հինգ երեխաներին: Ուսումը շարունակելու ցանկությունս մեծ էր, բայց առավել անհրաժեշտ էր թեթևացնել մայրիկիս հոգսը: Կհասցնեմ, անպայման կհասցնեմ կրթությունս շարունակել... մտածեցի և ընդունվեցի Ձեթ-օճառ կոմբինատի մեխանիկական արտադրամասը, որպես փականագործ-հավաքողի աշակերտ: 1960 թվականին մեկնեցի բանակ և զինվորական ծառայությունն ավարտելուց հետո վերադառնալով, ընդունվեցի այստեղ՝ իբրև գործիքագործ-փականագործի աշակերտ: Քսաներկու տարեկան էի արդեն: Վարպետս՝ Մարտին Գևորգյանը, իմ հասակակիցն էր, և մենք շատ շուտ հասկացանք, կապվեցինք իրար: Աշակերտությանը հաջորդեց վարպետությունը, որակավորման բարձրացումը, ավագ վարպետությունը...

Աշխատանքային 25 վաստակաշատ տարիներ, և այժմ արդեն արտադրամասի պետի տեղակալն է Ազատը, կուսակցական կազմակերպության քարտուղար: Այդ տարիներին նա ավարտել է պոլիտեխնիկական ինստիտուտի մեխանիկական ֆակուլտետը:

— Աշխատանք, ուսում, ընտանիք, երեխաներ... ո՛չ միտքս էր պարապ, ո՛չ ձեռքերս. նման զբաղվածությունն օգնեց ինձ՝ զերծ մնալու պարապության հատուկ թերություններից:

Քանի՜-քանի աշակերտներ է պատրաստել Ազատը, ջանալով համակել նրանց աշխատասիրության ոգով, ընտրած մասնագիտության մեջ հմտանալու ձգտումով:

— Գործիքագործ բանվորը բանվորների ինտելիգենցիան է,— արժանապատվությամբ ասում է նա և հիշում իր աշակերտներին: Ահա նրանք՝ Վահան և Հարություն Գույումջյանները. նրանք երկուսն էլ չեն գոհանում միայն արտադրամասում աշխատելով. Վահանն արդեն գեղարվեստական տեխնիկումի երրորդ կուրսի ուսանող է, Հարությունը՝ ըմբշամարտիկ-սպորտի վարպետության թեկնածու: Հմուտ մասնագետ է դարձել և Գրիգորյան Մամիկոնը: Ապա նա հիշում է Մուրադյան Պետրոսին, Ավետիսյան Սամվելին և շատ ուրիշների: Պատանիներ էին նրանք և իրենց ջահել վարպետի «ձեռքի տակ» ձևավորվեցին իբրև հմուտ արհեստավորներ, մասնագիտացան և, որ կարևոն է, դարձան լավ մարդիկ, կոմերիտական ակտիվիստներ, աշխատանքային մեծ կոլեկտիվի նախաձախնդիր անդամներ: Նրանք ևս, իրենց վարպետի նման, ջանում են ո՛չ միայն լինել բարեխիղճ, գերակատարել պլանները, այլև օգնում, ուշի ուշով հետևում են և ընկերների աշխատանքին. նրանք գործում են «Կողքիդ ոչ մի ետ մնացող» նշանաբանով:

Աշխատանքային, դաստիարակչական լավ ավանդույթներ են ստեղծվել «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում: Ավարտվում է սկսնակ բանվորի աշակերտության շրջանը, և ահա մի գեղեցիկ օր, ամբողջ տեղամասի, արտադրամասի առաջ, տոնական պայմաններում, երիտասարդին է հանձնվում որակավորված բանվորի վկայականը: Հրավիրվում են և աշխատանքի վետերաններ, որոնք թոշակավորվելուց հետո էլ շարունակում են ակտիվ մասնակցել գործարանի առօրյային, իրենց ավանդը ներդնել մասնագիտական կադրերի պատրաստման, աշխատանքային դաստիարակության գործում:

Նոր, երիտասարդ մասնագետին հատկացվում է որոշակի աշխատատեղ, և նա դառնում է համաժողովրդական-տնտեսական կարևոր խնդիրների լուծման մասնակիցը, ձուլվում կոլեկտիվին: Արդեն հրատապ է դառնում մասնագիտության մեջ խորանալու, որակավորման անընդհատ բարձրացման խնդիրը, որի իրականացումն անհնար է առանց տեսական-կրթական մակարդակի բարձրացման: Նրա առաջ հառնում են նաև այլ բարդ ու լուրջ, կենսաբուխ հարցեր (ընտանիք, երեխաների հոգս, խնամք, դաստիարակություն...), աշխատանքային պայմանները բարեփոխելու և այլ պրոբլեմներ, որոնք հուզում են նրան, զբաղեցնում նրա միտքը:

Հետաքրքրականն այն է, որ կոլեկտիվն անմիջապես զգում է, թե նոր ընդունված աշակերտներից կամ որակավորված բանվորներից ովքե՛ր կարող են ձուլվել կոլեկտիվին, դառնալ լավագույն մասնագետներ: Նրանք, ովքեր ջանում են լիովին տիրապետել մասնագիտությանը, հետաքրքրասեր են, կարգապահ, շատ շուտ հարազատանում են կոլեկտիվին: Գործարանի ղեկավարությունն ընդառաջում, քաջալերում է նրանց, հնարավորություն ընձեռում օգտվելու որոշակի արտոնություններից (որակավորման բարձրացման հաջորդական փուլերի կրճատում, ուղեգիր բարձրագույն ուսումնական հաստատություն ընդունվելու համար, կոմերիտական ու հասարակական աշխատանքի հանձնարարում, սանատորակուրորտային ձրի ուղեգիր և այլն):Այս ամենը, նյութական ու բարոյական խթանման բոլոր միջոցները, անշուշտ, ոգևորում են բանվորներին, նպաստում նրանց ստեղծագործական կարողությունների բացահայտմանը:

Բավական հետևողական և շատ ավելի տքնաջան աշխատանք է պահանջվում «դժվարամարս» երիտասարդների հետ. պասիվ են նրանք, չնախաձեռնող, անհետևողական... Անշուշտ, այդպիսին չեն ծնվել նրանք. էական նշանակություն է ունեցել ընտանեկան դաստիարակությունը: Փոքրուց նրանց չեն սովորեցրել հարգել ու սիրել աշխատանքը, ծնողներն ամեն ինչ արել են նրանց փոխարեն, նույնիսկ կրել դպրոցական դասերի ծանրությունը. ընտանիքներ, ուր, ինչպես ժողովուրդն է դիպուկ ասում, մեկը բանելով է մեռնում, մեկը՝ չբանելով: Եվ ահա ծնվում են ծույլերն ու պորտաբույծները՝ անտարբեր ամեն ինչի նկատմամբ, զուրկ պատասխանատվության զգացումից, անպարտաճանաչ: Այդպիսիներին բնավ չպետք է աչքաթող անել, այլ մշտապես պահել հոգածո ուշադրության կենտրոնում: Գործարանն այս դեպքում պետք է նմանվի այն հմուտ այգեգործին, որն ամեն ինչ անում է, որպեսզի ժամանակից շուտ չչորանան ու չջարդվեն կանաչ այգու մատաղ շիվերը:

Որակյալ մասնագետները, հմուտ վարպետները սրտացավ պահանջկոտությամբ, մտերմի խստությամբ ու սրտակցությամբ գտնելով ամենամարդախույս, ինքնամփոփ պատանիների, երիտասարդների սրտի ճամփան, պետք է օգնեն նրանց՝ հարազատանալու կոլեկտիվին, հաղթահարելու դժվարությունները, յուրացնելու աշխատանքային ավանդույթները: Այդպիսով նրանց հոգում աստիճանաբար ծնունդ կառնի կոլեկտիվիզմի, գործարանի պատիվը բարձր պահելու զգացումը, նրանք առավել հարգալից կդառնան շրջապատի, ընկերների, ծնողների ու հարազատների նկատմամբ:

«Գործարանը քո տունն է, դու ես նրա տերը» հայրենասիրական կոչը մոբիլիզացնում է կոլեկտիվի ուժերը: Անշուշտ, անհատի, կոլեկտիվի և հասարակության շահերի ներդաշնակությունն այն հիմքն է, որի վրա խարսխվում են ստեղծագործ աշխատանքի արդյունքները: Ուստի, որպեսզի երիտասարդը համաչափ քայլի ընդհանուր կոլեկտիվի հետ, նա չպետք է մտածի սոսկ իր անձնական շահերի մասին, անտեսելով հասարակականը: Հարկ է նկատել, որ այսպես են արմատավորվում սոցիալիստական ապրելակերպի սկզբունքները— խոսքի և գործի միասնություն:

Նման վերաբերմունքը, անշուշտ, անհատի, կոլեկտիվի և հասարակության շահերի ներդաշնակման վառ արտահայտությունն է, դրանց հետագա առավել մերձեցման երաշխիքը, որն օրինաչափ է սոցիալիստական հասարակարգի համար: Գիտատեխնիկական արդի հեղափոխության ժամանակաշրջանում վերափոխվում են օգտագործվող մեքենաները, հաստոցները, ավտոմատ կառավարման սիստեմները. դրանք աստիճանաբար բարդանում են, կատարելագործվում... Այդ ամենին զուգահեռ արդյունաբերությանն անհրաժեշտ կլինեն ավելի որակյալ ինժեներներ, տեխնիկներ ու բանվորներ: Ուստի, մեր բանվորները պարտավոր են ամեն օր զբաղվել իրենց գիտելիքների հարստացմամբ, խորանալ ընտրած մասնագիտության մեջ: Բուհերի հեռակա և երեկոյան ֆակուլտետներում իրենց ինժեներական գիտելիքներն են խորացնում 591 (1977—78 ուստարի), տեխնիկումներում և հերթափոխային դպրոցներում 352 երիտասարդներ:

Սովորել կոմունիզմ, կառուցել կոմունիզմ. այսպիսի համալիր պլանի միասնական ձև է մշակել միավորման ԼԿԵՄ կոմիտեն, որի խնդիրն է նպաստել բանվորների գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացմանը: 1977—78 ուսումնական տարում գործարանի 68 տիպի քաղխմբակներում ընդգրկված են 2.163 երիտասարդներ, 52 հոգի ինքնուրույն են զբաղվում իրենց գաղափարական-քաղաքական գիտելիքների խորացմամբ: Նախատեսված զեկուցումների համար հաճախակի հրավիրվում են գիտնականներ, պետական համալսարանի, պոլիտեխնիկական ինստիտուտի դասախոսներ: Միայն 1977 թվականին 186 դասախոսություն է կարդացվել ՍՍՀՄ արտաքին քաղաքականության, նոր Սահմանադրության և բազմաթիվ այլ հարցերի վերաբերյալ: Այս արտադրամիավորման բազմաբովանդակ առօրյան է արտացոլում «Էլեկտրամեքենաշինարար» բազմատիրաժ լրագիրը:

Անժխտելի է խելացի ժամանցի, կազմակերպված հանգստի նշանակությունը երիտասարդու-

թյան ուժերի վերականգնման, առողջության պահպանման, հոգևոր զարգացման համար:

Այս ամենն, անշուշտ, առավել ակտիվ, գործունյա է դարձնում բանվորներին, նպաստում նրանց աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարմանը: «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի գործիքագործները սոցիալիստական մրցության մեջ տասն անգամ անընդմեջ հաղթող են դուրս եկել: № 31 արտադրամասին շնորհվել է «Գործարանի լավագույն արտադրամասի» կոչում: Պլանից ավելի թողարկվել է 440 հազար ռուբլու արտադրանք, խնայվել է 45 տոննա սև մետաղ և գործիքային պողպատ, 1.200 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա: Բանվորի որակավորում են ստացել 40 հոգի, 40-ն էլ տիրապետել են երկրորդ մասնագիտությանը, 65 հոգի ընդգրկված են հանրակրթական ուսուցման խմբերում: Գործիքագործները պարտավորվել են տասներորդ հնգամյակի երրորդ տարվա պլանային առաջադրանքները կատարել մինչև 1978 թ. հոկտեմբերի 7-ը՝ ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունման տարեդարձի օրը, ակտիվ մասնակցել աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման համար ծավալված սոցիալիստական մրցությանը: Գործիքագործների օրինակին են հետևել ձեռնարկության շատ արտադրամասերի կոլեկտիվներ, բանվորներ:

Արտադրամիավորման ողջ կոլեկտիվը խանդավառությամբ ընդունեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակը՝ ուղղված կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, Սովետական Միության աշխատավորներին՝ 1978 թվականի պլանի կատարման ու գերակատարման համար սոցիալիստական մրցություն ծավալելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման համար պայքարն ուժեղացնելու մասին:

Ինչպես տեսնում ենք, «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումը մի դարբնոց է, որտեղ ստեղծվում են ո՛չ միայն գեներատորներ, տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակայաններ, այլև թրծվում է նոր, համակողմանի զարգացած մարդը: Այդ ճանապարհին, անշուշտ, հաղթահարվում են շատ արգելքներ, անհատը կոփվում է դժվարին, բարդ պայմաններում: Բայց չէ՛ որ կյանքում ամեն բան հեշտ չի ձեռք բերվում: Հետևողական ու համբերատար, սկզբունքային, անզիջում աշխատանքն է միայն տալիս ցանկալի արդյունք:

**Պ. Ե. ԱԶԱՐՅԱՆ**

Հայէլեկտրամեքենաշինական գործարանի կոնստրուկտորահետազոտական լաբորատորիայի պետ, տեխնիկական գիտությունների թեկնածու

**Ս. Վ. ԹՈՒՄԱՍՅԱՆ**

Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի դոցենտ, փիլիսոփայական գիտությունների թեկնածու

**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

**ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Խ., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ. (պատասխանատու քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ԿՃՈՋՅԱՆ Թ. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):**

Адрес редакции: 375033. Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 07398 Պատվեր 954 Թղթի չափը 70×108 1/16: Տիրաժ 15.900 Գինը՝ 20 կոպ.:*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 10/V—1978 թ.*
*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայկական սովետական հանրագիտարան: *Հ. 3: Ե., ԳԱ հրատ., 1978:*

Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ— Բուրժուական դիվանագիտությունը և Հայաստանը *(XIX դարի 70-ական թթ.): «Հայաստան» հրատ., 1978:*

Վլ. ՈՒՍՊԵՆՍԿԻ— Առաջին պրեզիդենտը: *Վիպակ Միխայիլ Կալինինի մասին: «Հայաստան» հրատ., 1978:*

Ղեկավարի աշխատանքը: *«Հայաստան» հրատ., 1978:*

Մ. ԿԱՏՈՒԿՈՎ— Գլխավոր հարվածի սուր ծայրում: *«Հայաստան» հրատ., 1978:*

Գ. ԱՆԱՆՅԱՆ— Մարքսիստական գրական քննադատության ուրվագիծ: *ԵՊՀ հրատ., 1978:*

Ա. ԼԱԼԱՅԱՆ— Օրինականության ապահովումը սովետական պետական կառավարման մեջ: *ԵՊՀ հրատ., 1978:*

Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ— Գիտելիքի ժամանակակից տեսության ակնարկ: *Ե., ԳԱ հրատ., 1978:*

ԱԳԱ ԲԱՍԿԻՆԱ— Հիմնենյի հարյուր ու մեկ պրոբլեմ: *«Հայաստան» հրատ., 1978:*

Ս. ՍԱՐԳՍՅԱՆ— Անմոռաց անուններ: *«Հայաստան» հրատ., 1978:*

**XXV съезд КПСС: единство теории и практики.** Выпуск 2. М., Политиздат, 1978.

Ф. КУЛАКОВ. — **Избранные речи и статьи.** М., Политиздат, 1978.

**О пролетарской партии нового типа.** Документы и материалы. К 75-летию II съезда РСДРП. М., Политиздат, 1978.

К. СУВОРОВ. — **Перемещение центра мирового революционного движения в Россию.** М., Политиздат, 1978.

А. КИРАКОСЯН. — **Индустриальная Армения.** Изд. «Айастан», 1978.

А. ЭЛЬЧИБЕКЯН. — **От ревкомов к Советам.** (Создание Советов в Армении). Изд. АН. Арм. ССР, 1978.

**Страны мира.** Краткий политико-экономический справочник. М., Политиздат, 1978.

Г. АДИБЕКОВ. — **За единство международного профсоюзного движения.** М., Профиздат, 1978.

А. КЛИМОВ. — **Октябрьская революция и кооперация.** М., «Экономика», 1978.

**Комплексная программа развития сельского хозяйства в действии.** М., «Экономика», 1978.

Р. КОНДАКЧЯН. — **Внутренняя политика Турции в годы второй мировой войны.** Изд. АН. Арм. ССР, 1978.

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՌՈԲՈՏՆ ՕԳՆՈՒՄ Է

*Մոսկվայի Լիխաչովի անվան ավտոգործարանի զսպան-զսպանակային արտադրամասում բանվորների հետ աշխատանքային հերթափոխի կանգնեց... ռոբոտը: Այն կատարում է արտադրապրոցեսի առավել աշխատատար և միատարր օպերացիաները: Ստեղծելով ռոբոտատեխնիկա, գործարանում հիմնված ռոբոտների տեխնոլոգիական կենտրոնական լաբորատորիայի նպատակն է՝ մասնագետներին ազատել առավել բարդ աշխատանքների համար:*

*Այժմ լաբորատորիայի աշխատակիցները տեղակայում են արդյունաբերական ռոբոտների ամբողջ ընտանիքներ* ЗИЛ—130 *ավտոմեքենայի խցիկի զոդման հոսքային գծում:*

## «ԱԴԱՍՏ»-Ը ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՄԱԿՆԻՇ Է

*Աշխարհի 96 երկրներում գործում են չեխ մասնագետների մշակած և թողարկած «Ադաստ» սերիայի չեխական տպագրական օֆսեթ մեքենաները, որոնք պիտանի են բոլոր տպարանների համար: Օֆսեթային թերթավոր այդ մեքենայով կարելի է տպագրել ցանկացած գրքեր— ամենահասարակ սև-սպիտակից մինչև բազմագույն բարձրորակ նկարների վերատպությունները: Մեքենայի արտադրողականությունը ժամում 6.000 օտիսկ է: Այն հուսալի է, երկարակյաց, սպասարկումը՝ պարզ:*

## ՉԻՉԽԱՆԻ (ՉԻԱՖՈՒՇԻ) ՍԵԼԵԿՑԻԱ

*Վաղուց են հայտնի չիչխանի յուղի և հյութի բուժիչ հատկությունները: Այն պարունակում է մեծ քանակությամբ վիտամիններ, կարոտինոիդներ և 54 տեսակի օրգանական թթուներ: Վայրի չիչխանը Մոնղոլիայում զբաղեցնում է գրեթե 30 հազար հեկտար տարածություն: Այն կիրառվում է դեղագործական արդյունաբերության մեջ՝ իբրև դեղանյութերի հումք: Չիչխանն օգտագործվում է նաև սննդարդյունաբերության մեջ: Մոնղոլիայի արևմուտքում ստեղծվել է փորձարարական խոշոր կայան այդ թանկարժեք հատապտղի սելեկցիոն աշխատանքների համար: Ներկայումս փորձարարական պլանտացիայում մեկ հեկտարից ստացվում է 10—15 տոննա չիչխան: Սելեկցիոներների նպատակն է՝ ստանալ առավել խոշոր հատապտուղներով և բարձր յուղայնությամբ սորտեր:*

## ԲԱԶՄԱՈՒՐԵԹԱՆ՝ ԳԻՊՍԻ ՓՈԽԱՐԵՆ

*ԳՖՀ-ի հիվանդանոցներում ծանր, անհարմար գիպսե վիրակապի փոխարեն օգտագործվում է փրփրոտ բազմաուրեթանե «պատյան», որը հուսալիորեն ամրացնում է ջարդված ծայրանդամները: Գիպսը լրիվ կոշտանում է երկու օրից հետո, իսկ գիպսե վիրակապի հանումը երկարատև է ու բարդ: Մինչդեռ բազմաուրեթանե վիրակապը հանվում և հագցվում է մի քանի վայրկյանում— դրա մասերը միացվում են ախլանքով:*

## ԽՈԼԵՍՏԵՐԻՆԻ ՆՈՐ ՀԱՏԿՈՒԹՅՈՒՆԸ

*Դեռ վերջերս գտնում էին, թե աթերոսկլերոզի և սրտամկանային ինֆարկտի զարգացման վտանգը կապված է արյան մեջ խոլեստերինի պարունակության ավելացման հետ: Այժմ շատ երկրների հետազոտողներ կասկածում են դրանում: Ավելին, որոշ տվյալներ, ասես, ստիպում են մտածել, որ խոլեստերինը պաշտպանում է ինֆարկտից:*

*Ամերիկյան Ֆրանինհեմ քաղաքի բնակիչների մի խոշոր խմբի երկարատև դիտարկումներից պարզվել է, որ սրտի հիվանդությունը սաստկացել է նրանցից 142-ի մոտ, որոնց արյան մեջ խոլեստերինի պարունակությունը նվազ է եղել: Մյուս կողմից, խոլեստերինի առատություն ունեցողներն ապրել են մինչև խոր ծերություն՝ չտառապելով սրտի հիվանդությամբ:*

*ԱՄՆ-ի Կոլումբիայի համալսարանի դոկտոր Հանս Կաունիցն առաջադրել է այն հետաքրքրական հիպոթեզը, որ ո՛չ թե աթերոսկլերոզն է առաջանում խոլեստերինից, այլ արյան մեջ խոլեստերինի պարունակության ավելացումը աթերոսկլերոզի հետևանք է: Նրա կարծիքով, հիվանդության պատճառն առայժմ անհայտ հարուցիչն է:*